# Գ Ի Ր Ք

## ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

## ԱՆՏՈՆԻ ԱԲԲԱՅԻ ՄԵԾԻ.

Շարադրեալ 'ի սրբոյն Աթանասէ աղեք-սանդրացւոյ. և վերածեալ 'ի յոյն բար-բառոյ 'ի լատին 'ի ձեռն Եւագրի անտիոքացւոյ, և անտի 'ի հայ

Աշխատասիրութեամբ Հայր Բարսեղ Վ ճգղի լաւր-ջեան ներըլացւոյ, 'ի միաբանութենէ ամենապատիւ տն Մխիթարայ աբբայի:

Տպագրեալ հրամանաւ գերյարգոյ Ստեփաննոսի աբբայի՝ նորին յաջորդի:

Յաւելիւք բարեբարաց ոմանց:

Ի հայրապետութեան տն Ղուկասու հայոց կաթղիկոսի:

Յամի տն. 1794. յօգոստոսի. 25. և 'ի Թուականին հայոց. ՌՄԽԳ:



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Վանս սրբոյն Ղազարու

Հրամանաւ Մեծաւորաց:



# ՆԱԽԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Հեղինակին, ի Է՛

## Սրբոյն Աթանասի Մեծի՝ աղեքսանդրու-
## հայրապետին :

Աթանաս եպիսկոպոս՝ առ հեռաւոր եղ-
բարս հանդարտեալս :



Զգեղեցիկ զինուորութենէ բուռն հարիք եղբարք, կէտ առաջի ե-դեալ նմանիլ միայնակեցացն ե-գիպտացւոց, կմ̃ զանցանել զնոքօք ՚ի փոյթս առաքինութեան : Քանզի և առ ձեզ յա-ջախեալ իսկ են վանորայք բազում, և տա-րածեալ յոյժ միայնակեցացդ անուն . այլ և Ը̃ բարեյօժար կամս ձեր յիրաւի է ա̃մ ումեք սքանչանալ . վ̃ս ակն ունիմ, եթէ ձերովդ աղօթիւք շնորհեսցէ ա̃ծ զխնդրելին ա̃մցն : Եւ զի խնդրեցէք ձեր յինէն գրել ձեզ զքա-ղաքավարութիւն երանելոյն Անտոնի՝ փափաքե-լով ուսանիլ, թէ զիարդ սկիզբն եղև ընթա-ցից նր̃, և զինչպիսի ոք էր յառաջ քան զն̃ր կոչումն . և զինչ կատարած կենաց նորա . և թէ՝ ճշմարիտ իցեն, որ ինչ համբաւի զնմա-նէ, ոպ̃ զի մարթասջիք նախանձաւոր լինել



վա-

վարուցն̅ր, և զհետ երթալ հետոցն̅ր, կամկը մտօք զո՞ւարթուն յանձին կալայ զայդ պատուէր սիրոյ ձերոյ ։ Քանզի և ինձ շահ մեծ է և օգուտ բազմ՝ յիշատակ մեծին անտոնի ․ և դուք 'ի լսել անդ՝ քաջ գիտեմ, զի զարմասջիք, և անդէն փափաքիջիք զհետ երթալ գնացից ն̅ր ։ Քանզի արդարև՝ կատարեալ ճանապարհ է առ առաքինութի՝ գիտելն իսկ ․

թէ ո՞վ և ո՞րպիսի ոք էր անտոն ։

Որդ՝ զի համառօտ ասացից ․ տիրապէս հաւատայջիք ամի, որ ինչ զնմանէ բան գովութ̅ պատմի ․ և ոչ այսչափ միայն, այլև համարեսջիք եթէ փոքունս 'ի մեծամեծաց նորա լո՞ւայք ։ Քանզի ճշմարտեղ գիտեմ, զի և նք չեղեն բաւական ամի հասու լինել ․ ոչ և ես իսկ գլխովին, որ 'ի խնդրոյ ձերմէ եկի յայս, ո՞րչափ և նշանակեցից թղթովս՝ զզուգակշիռն ն̅ր արդեանցն չունիմ պատմել ։ Ապա և դուք 'ի միոյ միոյ 'ի նցէ՝ որ միանգամ ասաց այդր նաւիցեն, զգուշագոյնս խոյզ և խնդիր արասջիք ․ զի 'ի պատմել առն առն զգործ իւրաքանչիւր՝ որում իրագէտ գտանիցի, լրում ասցէ վայելուչ և արժանաւոր պատմութ̅ մեծանուն առնս ։

Որդ՝ յետ ընթեռնլոյ զգիր ձեր՝ եդի 'ի մտի կոչել զոմանս 'ի միայնակեցաց առ իս, մանաւանդ զորս ստէպ երթային առ նա, զի լիագոյն ինչ արդեօք տեղեկացեղ 'ի նոցանէ՝ յղել մարթացայց ձեզ զպարգև մեծագոյն ։ Այլ քանզի ժամանակք նաւարկութե անցանէին, և թղթաբերն ձեպեալ փութայր, նմին իրի և զոր ինչ ես ինձէն գիտէի, (Քզի տեսալ

եր-

երթայի 'ի տես նր̃.) և զոր միանգամ ուսայ 'ի նմանէ՝ որ 'ի սպասու կայր առ նմա ոչ սակաւ ժամանակս՝ ջուր մատուցանել նմա, փութացայ յայտնաբանել ձեզ սիրելեացդ, երկոքումբք փոյթ կալեալ ճշմարտութե̃. զի մի՛ աւելի ինչ լուծեալ ուրուք՝ ոչ արժանահաւատ համարեսցի զյաճախութի̃ սքանչելեացն. և մի՛ ևս նուաստագոյնս քան զարժանն ծանուցեալ՝ ոչ արժանի համարեսցի հրաշից զայնպիսի հրաշանուն այր:





# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ ՀՕՐՆ
## ՄԵՐՈՅ ԱՆՏՈՆԻ ԱԲԲԱՅԻ
## ՄԵԾԻ։

### Գլուխ. Ա.։

*Ծննդեանն, և որբանալոյն սնանելոյն Անտոնի. և սկզբն քրիստոնէական կենաց։*



ԱՆՏՈՆԻՈՍ ԷՐ ԱԶՆՈՒականն և բարեպաշտօն ծնողաց զաւակ՝ յերկրէն եգիպտացւոց. սնեալ անդստին յուրոցն զգուշաւոր խնամով, մինչև ոչինչ գիտել նմա, բայց միայն զտունն և զծնօղս իւր։ Եւ մինչդեռ մանուկ էր՝ ոչ գրոցն վարժեցաւ, և ոչ զհետ տղայական բանից սնոտեաց յարեցաւ, այլ՝ սիրովն այ վառեալ՝ եղև ըստ գրեցելումն * Այր առանց պաճուճանաց ընդատուն ‖։

Հանապազ կանխէր յեկեղեցին ընդ ծնօղս իւր մեկ-

մեկնեալ ՚ի լրբութենէ և ՚ի ստահակութենէ ման-
կանց տղայոց . միայն բանից ընթերցուածոց՝
զորս լսէր, միտ եդեալ, զօգտակարութիւն պատ-
ուիրանացն յանձին իւր ձգէր անարատ քաղա-
քավարութեամբ : Ոչ երբէք նեղեաց նա զիւրսն՝
ըստ տղայական բուսոյ բարուց յաղագս ազգի
ազգի և անուշակ ճաշակաց, և ոչ զհետ պըր-
գանաց փափուկ կերակրոց չոգաւ . այլ՝ շատ
անձին համարէր զոր ինչ և տային նմա, աւե-
լի ինչ ոչ խնդրէր :

Նա և եղև յետ վախճանելոյ ծնողացն՝ իբրև
ութևտասան կամ քսանամեայ մնացեալ ընդ կըր-
սերագոյն քեռն՝ խնամ ունէր զգաստութեամբ
տան և քեռ իւրում : Նա և այն ինչ՝ չև էին ան-
ցեալ ամիսք վեց, յորս ըստ սովորութեան հանապա-
զորդեալ կանխէր յեկեղեցին, խորհուրդք ան-
կան ՚ի միտս նորա՝ թէ զիարդ առաքեալքն ար-
համարհելով զամենայն չոգան զհետ փրկչին . և
թէ ոմանք բազումք՝ ըստ ընթերցուածոյ գործոց առա-
քելոց, զինչս իւրեանց վաճառեալ՝ գնէին
զգինս առ ոտս նոցա, բաշխել կարօտելոց . և թէ
զինչպիսի կամ որչափ յոյս գանձեալ պահին նոցա
յերկինս : Զայս ամենայն զմտաւ ածելով՝ իբրև
եմուտ յեկեղեցի, դէպ եղև՝ զի ընթեռնու-
ին յայնժամ զաւետարանն, ուր ասէ տէրն
առ մեծատունն . * Եթէ կամիս կատարեալ
լինել, երթ վաճառեա զինչս քո, և տուր աղ-
քատաց, և ունիցիս գանձս յերկինս, և եկ
զկնի իմ : Զայս լուեալ նորա, իբրև առ յինքն
համարեցաւ զխօսս սրտի իւրոյ . և ոչ թէ
վասն իւր իցէ ընթերցուածն այն ըստ ծայրին տա-
ուիջ, յինքն ձգեաց զնորուն պատուիրանին :

Նա

Այլ անդէն փաղփաղակի երթեալ վաճառեաց
զինչս և զստացուածս իւր : Էին նր անդաս-
տանք շահեկանք և արգաւանդք յոյժ՝ երեք
հարիւր արտաչափ (ըստ Եգիպտացւոց) . զորս
ետ մերձաւորաց իւրոց . զի մի՛ իւիք անձին
կի՛ քեռն բեռն լինիցին : Իսկ զմնացեալ գոյս
իւր զա՛մ վաճառեաց . և ժողովեալ զամենն բա-
զում 'ի գնոց անտի , բաշխեաց կարօտելոց .
պահեալ միայն սակաւ ինչ 'ի պէտս քեռն
իւրոյ իբրև տկարագունի բնութեամբ և
հասակաւ :

Դարձեալ՝ մտեալ յեկեղեցին , իբրև լուաւ
զբանն տեառն , զոր ասէ յաւետարանին
անդ . * Մի՛ այսուհետև հոգայցէք վն վաղ-
ուին ||, փութացեալ բաշխեաց և զմնացեալ
բաժինն անանկաց . և ոչ կամեցաւ այլ և
կալ 'ի տան , այլ յանձն արարեալ զքոյրն հա-
ւատարիմ և ծանօթ կուսանաց , զի ըստ օ-
րինակի նց զարգասցի , և ինքն այսուհետև
ազատացեալ յա՛մ կապանաց կենցաղոյս՝
բուռն եհար զխստ և զանձուկ կարգաց :
Ոչ ևս յայնժամ բազմացեալ վանորայք յե-
գիպտոս , և չէր ոք տակաւին տեղեկացեալ
անկոխ անապատի առանձնութե . այլ՝ որ մի-
անգամ յաջողէր լինել ցանկայր 'ի ծառայ-
ութն քի , ոչինչ կարի բացագոյն 'ի գեղջէ
իւրմէ առանձնացեալ հանդարտէր :

Արդ՝ էր ծեր մի 'ի մօտաւոր գեօղ ուրեմն,
անդստին 'ի մանկութէ պարապեալ միակեցա-
կան վարուց : Զսա տեսեալ անտոնի , նա-
խանձաւոր եղև բարւոյն : Այլ սկսաւ և ինքն
զառաջինն բնակել 'ի տեղիս սակաւ ինչ բա-

ցա

ցագոյնս 'ի գեղջէ ։ Յետ այսորիկ զոր միանդամ գտանէր յայսպիսի ձգունս յառաջագեմ, 'ի խնդիր նր իբրև զհանճարեղն մեղու ընթանայր . և ոչ դառնայր 'ի բնակութի իւր, մինչև էր լիով վայելեալ 'ի քաղցր տեսութե նր՝ որում փափաքէր . և այնպս իբրև թէ յանձին բարձեալ զմթերս մեղու՝ դարձ առնէր 'ի տեղի իւր ։

Այսու օրինակաւ սկիզբն արարեալ համդարտութե անդէն, որ ըն օրէ զօրանայր յանձն իւր, մինչև չյիշեալ նմա այնուհետև զմեծութի հայրենի, և զազգականս իւր, այլ զամ յօժարութի և զփոյթ իւր՝ յոր ինչ ձեռնամուխն եղև, ուղերձէր ։ Եւ գործէր ձեռօք իւրովք, գիտելով զգրեալն, թէ * որ ոչն գործիցէ, և կերիցէ մի ‖ ։ Այլ զվարձս ձեռագործի իւրոյ աղքատաց բաշխէր՝ բաց 'ի գնոյ հացին ։ Յաղօթս կայր ստէպ . զի քաջ ուսեալ էր, թէ պարտ է * անդադար աղօթս առնել առ ած ‖ ։ Ունկնդրութե ածաշունչ գրոց այնչափ փոյթ ընծայէր, մինչև ոչինչ անկանել յուշոյ մտաց նր, այլ զամ պատուիրանս այն պահելով՝ զյիշողականն փոխանակ գրոց ունէր ։

Զայսպիսի վարուց սահման անձին եդեալ՝ ամենեղբարց սեռն սիրով սիրելի լինէր . և ամենեցուն՝ առ որս երթայր անձկանօք ուսանելոյ, հպատակ զանձն ընծայելով, զմիոյ միոյ 'ի նցէ զշնորհս յանձն իւր ձգէր ։ Ումեմն ժուժկալութե և ումեմն զուարթամտութե նմանօղ լինէր . միումն հանդարտութե, միւսումն տքնութե, և այլոյ ումեմն ընթերցասիրութենն նախան_

խանձաւոր լինէր ։ Ընդ միոյն պահուն, և ը̄ միւսոյն գետնախշտութիւն սքանչանայր. զո_մանց համբերութիւն, և զայլոց զհեզութիւն քարոզէր ։ Եւ 'ի վ̄ր ա̄մի՝ զամենեցուն՝ որ առ ինքն զհարազատ զսէր, յանձին օրինա_կեալ, և ա̄մ մասամբք առաքինութե̄ց ոռո_գեալ՝ դառնայր անդրէն 'ի բնակութի̄ իւր ։ Եւ անդ զայս ա̄մ ստէպ յուշածելով՝ ջանայր զամենեցուն զբարելաւութիս յանձին նկարա_գրել ։ Եւ ոչ ընդդէմ հասակակից եղբարց երբէք 'ի նախանձ գրգռիւր, այլ՝ այն ևեթ բոց արծարծեալ վառէր 'ի սիրտ սքանչելի առնս, զի մի՛ քան զոք յետնեալ գտցի 'ի նախ_ասացեալ գործս առաքինութե̄ց ։

Եւ զայս այնպէս առնէր, զի՝ թէպէտ և զա_մենեքումբք զանցանէր փառաւորութ̄բ, սա_կայն և այնպէս ամենեցուն սիրելի լինէր ։ Քանզի մերձաւոր եղբարք և միայնակեացք առ որս ստէպ երթայր, տուեալ զանուն՝ Ա̄ծասէր զնա ձայնէին (այսինքն սիրելի Ա̄յ). և տուեալ նմ̂ անուանս գգուանաց՝ սիրէին զնա կէսք իբրև զորդի, և այլք իբրև զեղբայր ։

---

## Գլուխ. Բ ։

*Վաղաջէն յաղթութե̄ անտանի ընդդէմ չարին. և ան_չափ ծաղկելութե̄ նորին ։*

Մինչդեռ զայս օրինակ քղ̄քավարէր անտոն որով զամենեցուն զսէրն յինքն յանկուցանէր, Թշնամին բնականն անուանն բանսար_կուն

կուսն սատանայ՝ չհանդուրժել մախանօք զՔ
այնչափ առաքինութիւն պատուականայն՝ հինն խա_
րամանկութեամբ յարեաւ 'ի վ~ նր։ Այլ նախ
փորձելով՝ եթէ հնար իցէ ինչ իւիք խափա_
նել զնա յառաջադրեալ գեղեցիկ կարգաց,
յուշ առնէր նմա զատացուածս իւր, զկար_
ևոր խնամն՝ 'ի մ~ քեռն, զառհամայն ազնուա_
կանութիւն, զանէր ընչիցն, զանցաւոր փառս
աշխարհիս, զազգի ազգի փափկութիւնս կերա_
կրոց, և զայլ ևս հրապոյրս զխաբուսն և զճար_
ձակ կենաց։ Այլ դարձեալ յիշեցուցանէր
նմա զդժուարամատոյց կատարումն առաքինու_
թեց, և զանհնարին վիշտս հասանելոյ առ
այն. առաջի դնէր և զտկարութի մարմնոյն,
և զայլազանեայ երկարութի կենացն։ Այլ այն_
պէս 'ի վերայ յարուցանէր թանձր աղջա_
մուղջս խորհրդոց, կամելով յետս ընկրկել
զնա յուղիղ առաջարկութենէն։

Այլ իբրև ետես բանսարկուն, եթէ առա_
թիւք նր առ Տր և հաստատուն համբերութ~
ամօթապարտեալ նկուն լինի յերեսաց նր, այ_
նուհետև զավերական զէնն 'ի ձեռս առեալ՝
որ ընդդէմ ամ մանկական հասակի, գիշե_
րային ցնորիւք նեղէր զնա։ Այլ զառաջինն՝
'ի մէջ գիշերի խուռն խուժանօք բազմութե
և ահագին դղրդմամբք ջանայր խռովեցու_
ցանել զնա. ոմն և 'ի տունկեան յայտնի նե_
տիւք յառնէր 'ի վերայ. մինչև ամենեցուն
յայտնի լինիլ՝ եթէ մարտ եղեալ կռուեալ կա_
տան ընդ բանսարկուին։ Վասնզի նա ջուն
գործէր խորհուրդս աղտեղիս 'ի միտս նր տր_
կանել. իսկ սուրբն մշտամռունչ աղօթիւքն

'ի բաց մերժեր զնմ: Նա փութեր 'ի գրգռել
զզգայարանս նր բնաւորէն տապով մարմնոյն.
իսկ սա հաւատովք, տքնութբ և պահօք զմար-
մինն ողջոյն ամրացուցանէր: Նա 'ի գիշերի
'ի կերպարանս կանացի գեղոյ պճնեալ եր-
ևէր՝ յաճախելով զնմ հրապոյրս անառակու-
թեց. սա զվրիժաբեր բոց գեհենոյն, և ըզ-
տանջանս որդանցն զմտաւ ածեալ՝ նովիմբք
ընդդէմ լկտի յարձակմանց բաղխէր: Նա
զերիտասարդական վայելս ազգաւոր և զխ-
րատս գնացից նմ յուշ առնէր, և սա զյա-
ւիտենից տանջանսն հանդերձեալ դատաստա-
նին յուշ ածեալ՝ ողջ անարատ պահէր զըր-
բութի հոգւոյն 'ի փորձութենէ.
Աւ այս ամ յամօթ նախատանաց բանսարկ-
ուին լինէր. զի որ համարէր զանձն՝ իշխել
նման այ լինել, ահա արդ ամի նկուն եղե-
եալ ծաղր լինէր 'ի պատանւոյ. և որ ընդդէմ
մարմնոյ և արեան զօրանայր, 'ի տկար մարմ-
նոյ անտի զգետնեալ դատէ: Զանզի 'ի թի-
կունս հատանէր տէրն իւրում ծառայի. այն՝
որ յաղագս մեր մարմնացեալ՝ պարգևեաց
մարմնոյ զյաղթութի ընդդէմ ստնյի. մինչև
ամի՝ որ միանգամ սովին օրինակ մեղքն, 'ի
դէպ դայ ասել զառաքելոյն բան, եթէ * ոչ
ես, այլ շնորհքն այ՝ որ ընդ իս ||: Իսկ և այն
ինչ անկարանայր և գոլին փորձանօք կործա-
նել զանատն՝ վիշապն մահաշունչ, և տեսա-
նէր զանձն 'ի խորհրդոց նորա հանապազ
հերքեալ, ապա այնուհետև ըստ գրեցե-
լումն՝ * կրճտելով զատամունս իւր ||, և
գուժալով, ողջ և են՝ յայն կերպարանս երևէր
ըստ

ըստ արժանւոյն . իբրև մանուկ մի գարշ և
սևաւ հնդիկ անկեալ առ ոտս նր՝ լայր ձայնիւ
մարդոյ, և ասէր . Ո բազում մոլորեցուցի,
և զևս բզմս պատրեցի . այլ այժմ, որ յայլոց
անտի ոչ, նոյնպէս և 'ի քոց ձգանց պար_
տեալ ամաչեցի : Իսկ իբրև եհարց զնա ան_
տոն . ով ես դու, որ զայդ խօսիս : Պատաս_
խանի տուեալ ասէ . Ես եմ բարեկամ պղծու_
թե . և ես եմ որ 'ի կիր արկանեմ զբազմա_
տեսակ զչէնս անառակութեց ընդդէմ մամ երի_
տասարդական հասակի . վոյ և ոգի պոռնկու_
թե՝ անուն է իմ : Բանիւք իցեն 'ի մեքրասի_
րաց, զորս պատրեալ ՟Է տիղմ թաւալեցուցի .
և քանիք 'ի թուլամիտ զգաստացելոց, զորս
յառաջին անմաքրութին դառնալ հրապուրե_
ցի : Ես եմ, վոյ մարգարէն կշտամբելով
զանկեալսն ասէ * . Այսու պոռնկութ (այսինքն
ոգւով պոռնկութեան) մոլորեցայք || . Քզի արդարև
և նոքա ինև գլխ'իվայր կործան անկան : Ես
ինքն եմ, որ և զքեզ բզմ անգամ փորձեցի,
և յամի 'ի բաց վանեալ հալածեցայ : Ո այս
իբրև լուաւ նահատակն քի, գոհացաւ ըզ_
տեառնէ . և առաւելագոյն արութ զօրացեալ
ընդդէմ բանսարկուին՝ ասէ . Ապա գլխովին
արհամարհ և անպիտան ես դու . քանզի և
տեսիլդ խաւարագգեաց, և նկուն հասակդ
քումդ անպիտանութե են նշանակք : Իսկ արդ
ոչինչ այսուհետև փոյթ լիցի ինձ զքէն .
* Տր է իմ օգնական, և ես ուրախ եղէց 'ի
թշնամիս իմ || : Իսկ յայն բարբառ՝ զայդ ընդ_
սաղմոսել նր զայս՝ և առ աչօք տեսիլն այն
անյայտ եղև :

Այս եղև առաջին յաղթութիւն անտոնի ըն֊
դէմ բանսարկուին , մանաւանդ թէ զօ֊
րութիւն փրկչին յանձն անտոնի ․ * Որ դատա֊
պարտեաց զմեղս 'ի մարմնի անդ , զի արդա֊
րութի օրինացն կատարեսցի 'ի մեզ , որք ոչ ըստ
մարմնոյ գնայցեմք , այլ ըստ հոգւոյ ‖ ։ Այլ
ոչ անտոն յանհոգութիւն ինչ կրթեցաւ դովլին
միակ յաղթութբ̅ , և ոչ զօրութիք բանսարկ֊
ուին յետ միանգամ խորտակելոյ բեկան խա֊
պան ։ Քանզի սա * իբրև զառիւծ գոչէր
և խնդրէր ‖ մուտս յարձակելոյ 'ի վր̅ նորա ․
իսկ նա խրատեալ յա̅ծեղէն գրոց , եթէ բա֊
զումեն հնարք սատանայի , անխափան վաստա
կօք պինդ ունէր զառաջեդեալ կեանս , զմտա֊
ածեալ թէ որ պատերազմաւ մարմնոյ յաղթե֊
ցաւ՝ սատանայ , ոչ դադարէ ընդդէմ իւր լա֊
րել զևս սաստկագոյն և նորանոր որոգայթս
մեքենայից ։ Սորին վս̅ և ևս քան զևս * Ճնշէր
զմարմին իւր ‖ , զի մի արդեօք որ յաղթեացն
այդց փորձանաց , յաղթեսցի յայլոց ։ Ապա՝
հաստատեալ 'ի միտս իւր խստագոյն ևս վա֊
րուց կրթութբ̅ ճնշել զանձն , մինչև զարմա֊
նալ ամենեցուն ընդ անձանձրոյթ հաստա֊
տուն պատանւոյն , որոյ մօք յանձին բե֊
րէր զծբ̅ ձգունս վաստակոց ․ զի անդուլ վաս֊
տակասիրութի կամաւոր ծառայութե 'ի գործոն
եոյ՝ զսովորութին 'ի բնութիւն զկնովին էր փո֊
խարկեալ ։

Այլ պահոց և տքնութեց մասամբ այնչափ
ժուժկալ էր , մինչև յաղթել տիրապէս
անհաւան լսելեաց ։ Հանէր ստէպ զգիշերն
'ի դլուխ յաղօթս ։ Յաւուրն միանգամ ճա֊

շակեր յետ մտանելոյ արեգական ։ Իսկ՝ զի և զերկաւուրբք և զերեքաւուրբք անսուաղ կացեալ՝ ապա յաւուրն չորրորդի առնոյր զըդեպահիկ կերակուրն ։ Եւ էր կերակուր նորա հաց՝ և աղ, և ջուր սակաւ ։ Զմսոյ և զգինւոյ լաւ համարիմ լռել՝ քան ասել ինչ․ որովհետև և առ բզմս 'ի միանձանց ոչ գտանի ինչ յայսպիսեաց աստի ։

Ի տալ հանգիստ մարմնոյն՝ արկանէր 'ի ներքոյ փոխանակ պրտուեղէն, և խորգ մազեղէն․ և բնակ այն էր՝ զի 'ի վերայ մերկ հողոյ դետնախշտի լինէր ։ Յօժանելեաց բացէ 'ի բաց էր հրաժարեալ․ քանզի ասէր ․ Ոչ երբէք կարեն զօրանալ, որոց մարմինք դրգանան այսպիսեօք, և մանաւանդ երիտասարդաց, եթէ փափկութք իւղոց մեղկացին․ այլ պարտ է նուաճել զմարմինն խստամբեր աշխատութք ըստ առաքելոյն պատուիրանի, որ ասէ․ * Յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ ։ Եւ դարձեալ կնքէր ասելով․ Զօրութք հոգւոյն յայնժամ ոգի առնէ զբարգաւաճին, յորժամ մարմնոյն բռնութք ձնշեալ պարտասին ։ Ոչ և ոչ ժամանակաց երկարութք զարդիւնս վաստակոց չափէր, այլ՝ սիրով և մտադիւր ծառայութք՝ հանապազ իբրև այն ինչ սկիզբն արարեալ՝ զեռանդն սրտին բորբոքէր 'ի փոյթ յառաջադիմութե յերկիւղն այ․ և բաղձալով նորս 'ի վր յաւելլուլ անցելոցն՝ զնորին զմտաւածեր զառաքելոյն բան, որ ասէ․ * Զառ 'ի յետոյսն մոռացեալ եմ, և յառաջադէմն նկրտիմ ։

Զիշէր և զբանն Եղիայի մարգարէին, որ ասէ․

ռէ ։ * Կենդանի է Տր՝ որոյ կացի այսօր առա_
ջի նր ։ Եւ մտախոհ լինէր 'ի սրտի իւրում՝
թէ ընդէ՞ր յաւելու մարգարէն զայսօրն ․ վն
զի ոչ 'ի համար արկանէր եղիա զանցեալ ժա_
մանակն , այլ հանապազօր ոպ թէ 'ի ճակատա_
մարտի կացեալ այնպիսի ցանկայր զանձն ըն_
ծայել , ոպ արժանն է լինել առաջի երեսացն
Այ ․ որք սրտիւ , և դիւրապատրաստ յամի 'ի
հնազանդիլ կամաց նր ։

---

## Գլուխ ․ Գ ։

Աղօթս առնէ 'ի գերեզմանս ․ և բազմօրինակ
հրաշիւք դիւահարն բժշկէ ։

Ապա խորհուրդ 'ի միտս եդեալ սրբյն անտո_
նի՝ եթէ պարտ է ծոյլին սրյ 'ի գնացից
անտի մեծին եղիայի առնուլ զօրինակ , և ըս նմին
օրինակի զվարս իւր տնօրինել , դէմ եդեալ
գնաց 'ի գերեզմանատունս , որք ոչինչ կարի
հեռի էին 'ի գեղջէն , պատուէր տուեալ
միում 'ի ծանօթից իւրոց՝ բերել նմա զկերա_
կուրն 'ի սահմանեալ աւուրս ։ Եւ իբրև փա_
կեաց զնա եղբայրն 'ի միումն 'ի գերեզմա_
նաց անտի՝ նստէր անտոն անդէն միայն ։
Յայնժամ վարանեալ բանսարկուին , թէ գու_
ցէ յետ ժամանակաց և զանապատն գլխովին
'ի բնակութի կարգեսցէ , ժողովեաց 'ի վր նր
զարբանեակս իւր , և ետ ազգի ազգի հար_
ուածովք չարաչար խոշտանգել զնա , մինչև
'ի սաստկութէ ցաւոցն կալ մնալ նմա անշարժ
և անբարբառ ։ Որպ և ինքն իսկ յետոյ պատ_

 մէր

մեր բաղում անգամ, եթէ այնչափ խիստ եղեն վէրքն այն, մինչև զանցանել զամ տան-ջանօք մարդկան : Այլ խնամք տեսչութեն ծյ, որ ոչ երբեք թողու զյուսացեալս իւր՝ պահեաց զնա կենդանի :

՚Ի փաղփիլ անդր՝ եկն եղբայրն՝ բերել նմա հաց. և իբրև եբաց զդուրս, և եգիտ զնա տա-րածեալ ՚ի վր երկրի կիսամահ, եբարձ զնա շալակաւ, և տարաւ ՚ի դաւիթ եկեղեցւոյն՝ որ ՚ի շինին : Իբրև լու եղև այս, դիմեալ հա-սին անդր խուռն բազմութի մերձակայից և ծանօթից նր. և շուրջ պատեալ զնովաւ՝ սգա-յին ՚ի վր նր իբրև ՚ի վր մեռելոյ ողբաձայն պաշտամամբք : Իսկ իբրև գիշերն ընդ միջէր, ամցն՝ որոց անդն կային արթուն տքնութբ, ծանրացան աչք ՚ի քնոյ, և անկան ՚ի խոր թմրութի : Յայնժամ առ փոքր մի ՚ի միտս ե-կեալ անտոնի՝ յոգւոց եհան, և ամբարձ ՚ի վեր զգլուխն. և տեսեալ զամենեսին առ հասարակ ըմբռնեալս ՚ի խոր քուն, և զեղբայրն ևեթ՝ որ եած զնա անդր, արթուն, ակնարկեալ կոչեաց զնա առ ինքն, և աղաչեաց՝ զի ա-ռանց զարթուցանելոյ զոք՝ անդրէն տարցէ զնա յառաջին բնակութին :

Արդ՝ իբրև ածաւ ՚ի տեղի իւր, դարձեալ ըստ առաջին սովորութենն մնայր անդէն միայն : Յոտն կալ ոչ կարէր յաղագս նորոգ հարուա-ծոցն, այլ է գետին տարածեալ՝ եկաց յա-ղօթս. և յետ աղօթիցն համարձակ բարբա-ռով սկսաւ ասել. Ահաւասիկ ես անտոն աստ եմ. ոչ փախչիմ ՚ի պատերազմաց ձերոց. և ե-թէ մեծամեծս ևս յարուցիք, ոչինչ մեկնես-

ցէ զիս 'ի սիրոյն քո։ Եւ սաղմոսէր ասելով.
* Թէ պատրաստեսցի 'ի վ՟ր իմ պատերազմ,
ոչ երկիցէ սիրտ իմ։

Եւ իբրև նա զայս ասէր, Թշնամին բարեաց բանսարկուն՝ յափշտակութ՟ի պարտեալ, զի յետ այնչափ գանիցն իշխեաց դառնալ անդրէն, կոչեաց առ ինքն զարբանեակս իւր իբրև ըզ-բաղմուն շանց, և ինքն գլխովին անհնարին կատաղութ՟ խածատելով զանձն ասէր. Տե-սանէ՞ք, զի ոչ ոգւով պոռնկութ՟, և ոչ տան-ջանօք մարմնոյ յաղթեմ՝ տակաւին իշխէ ես համարձակ 'ի գրգիռ մարտի կոչել զմեզ։ Այ-սպա վառեցարուք ամ՟ զինուք, և սաստկա-գոյնս ես պատերազմեսցուք ը՟ նմա. ոչ զի քաջ 'ի միտ առցէ և ծանիցէ, եթէ զո՞ 'ի մարտ գրգռէ։ Օ այս ասաց, և անդէն 'ի լուր բարբառոյ ն՟ր համախոհ գտան 'ի խոր-հուրդս չարութ՟. քանզի անհամար արուեստք են բանսարկուին 'ի վնասել։

Եւ ահա յանկարծակի հնչեաց ձայն ահա-գին, մինչև դղրդել տեղւոյն 'ի հիմանց, և պատառիլ որմոցն. և անդէն առ նմին հեղան զեղան 'ի ներքս բազմութ՟ք այլանդակաց դժո-խատեսիլ դիւաց։ Քանզի զգաղինաց և զսող-նոց զկերպարանս զգեցեալ՝ յական թօթա-փել լցին զամ՟ տեղին ցնորիւք տեսլեան իբրև առիւծուց, ցլուց, գայլոց, քարբից և օձից, կարճաց, և ընձուց, և արջուց։ Եւ ամե-նեքին ըստ բնածին բարուցն շչէին և գոչէին անդէն։ Ա՛ռնչէր առիւծն՝ պատառել զնա կամելով. ցուլն բառանջելով՝ և եղջերօքն խեթկել սպառնայր. օձն զգայռելով շչէր.

վոհմակք գայլոցն 'ի վ՜ր յարձակելին. Ընձն խայտախարիւն երանգօքն զսկզբնաչարին իւրոյ յայտնէր զազգի ազգի չարարուեստ հնարս: Դէմք ա՜մցն ն՜ց խժոռատեսիլ՝ ահարկու տեսանելեաց, և քստմնելի լսելեաց գոչիւն աղաղակի ն՜ց:

Այլ անտոռն՝ որ կոչկոճեալն էր հարուածովք գանից և վիրօք լի, Թէպէտ և զգայր զդառնակսկիծ ցաւս մարմնոյն, տակայն աներկիւղ կայր արթուն մտօք. և Թէպէտ վէրք մարմնոյն ստիպէին զնա 'ի հեծեծանս, այլ սակայն մտօքն անդրդուելի կայր, և իբրև խաղ առնելով զբազմութիւն Թշնամեաց իւրոց՝ ասէր ցն՜ս. Եթէ էր ձեր զօրութիւն, շատ էր մինդ 'ի ձէնջ 'ի պատերազմիլ ընդ իս: Այլ քանզի խորտակեաց Տ՜ր զզօրութիւն ձեր, բազմութիւն հնարիք ինձ ահ արկանել. և այդ իսկ նշան է ձերումդ տկարութեան, զի 'ի կերպարանս անբանից կենդանեաց կերպարանիք: Իսկ միւսանգամ համարձակեալ ասէ. եթէ կարող իցէք, և եթէ տուեալ է ձեզ 'ի Տ՜ռնէ իշխանութիւն 'ի վ՜ր իմ, աւասիկ եմ. գիշատեցէք զմարմինս 'ի ձեռս ձեր. ապա եթէ չէք կարող, զի՞ 'ի զուր վաստակիք: Քանզի նշան ս՜րբ խաչին, և հաւատք հաստատութեան առ Տ՜ր, անմատնելի պարիսպ են մեզ: Այլ նոքա մեծամեծս սպառնալով ընդդէմ ս՜րբյն անտոնի՝ կրճտէին զատամունս իւրեանց, զի ոչ միայն 'ի դերև ելին փորձութիւնք ն՜ց, այլև յամօթ նոցին դարձան:

Ոչ անտես արար փրկիչն զհանդէս մրցանաց ծառայի իւրոյ, այլ վերակացու եղև նմա:

Իւ

Եւ իբրեւ 'ի վախճան մարտի ամբարձ զաչս իւր անտոն 'ի վեր, ետես՝ զի բացաւ ձեղուն յարկին, և լուսափիւռ ճառագայթ ծագեալ 'ի վ՛ր՝ փարատեաց զխաւարն ։ Եւ ընդ ճառագայթեալ լուսոյն՝ դեք ամ 'ի չիք դարձան. և առ նմին ցաւք մարմնոյ նորա իսպառ փարատեցան. և բնակարանն, որ փոքր մի յառաջ քանդեալ էր՝ անդրէն նորոգեցաւ ։ Յայնժամ գիտացեալ անտոնի զառաջինկայ լինել ամն, և 'ի խորոց սրտէ յոգւոց հանեալ խօսել սկսաւ առ լոյսն, որ երևեցաւն նմա, և ասէ. Ո՞ւր էիր բարի յս, ո՞ւր էիր. և ընդէ՞ր յսկզբանէ ոչ եղեր մերձ, 'ի բժշկել զվէրս իմ ։ Ձայն եղև առ նա, և ասէ. Ա՛նտոնիէ՝ աստ էի. այլ սպասէի միայն տեսանել զքո մարտ պատերազմի ։ Եւ արդ՝ փոխանակ զի ոչ լքար 'ի պատերազմելոյ արիաբար, յամ ժամ զօրավիգն եղէց քեզ, և արարից զքեզ անուանի ընդ ամ տիեզերս ։ Զայս լուեալ նր՝ յարեաւ եկաց յաղօթս, զօրացեալ յոյժ. մինչև յանձին զգալ՝ եթէ զօրուն առաւելագոյն ընկալաւ քան զառաջինն ։ Եւ էր յայնժամ անտոն երեսուն և հինգ ամաց ։

---

## Գլուխ. Գ ։

Մեկնել անտոնի յանապատ ։ Սքանչելեացն, և զգենուլն վանորէից ։

Յետ այսորիկ իբրև առաւելոյր ամ յօժարափոյթ կամացն 'ի յառաջադիմութի բարեկրօն կարգաց, գնացեալ առ ծերն՝ զոր

'ի վեր անդր յիշատակեցաք , աղաչէր զնա , զի միաբան երթել արասցեն բնակութի յանապատի ։ Նա իբրև սկսաւ պատճառս դնել զծերութի՞ իւր և զկրացն նորութի՞ , խնքնին միայնակ դիմեաց 'ի լեառն . և մերժել զերկիւղ՝ բուռն եհար հորդել ճանապարհ անապատին , որ դեռևս անծանօթ էր միայնակեցաց ։ Սակայն և ոչ սաստ զառեղի եառսոսխմն անքուն . քանզի կամելով խափան լինել ընթացից նր , ընկեց 'ի վր ճանապարհի զսկաւառակ մի արծաթի ։

Զայն տեսել անտոնի՝ ծանեաւ զխարդախութի չարարուեստ որսողին . եկաց անդէն վայր մի աներկիւղ , և խոժոռ ակամբք հայեցեալ 'ի վր սկաւառակին , անգոսնէր զդարանագործն յայն երևոյթ արծաթոյն . զայս ինչ ասելով ընդ միտս . Ուստի՞ իցէ յանապատի աստ սկաւառակ արծաթի . անկոխ է ճանապարհս այս , և ոչինչ հետք անցաւորաց երևին . եթէ անկեալ էր 'ի բեռանց՝ վասն մեծութեն ոչ կարէր թաքչիլ . և կմ որ կորոյսն , ընդ կրունկն դարձեալ , գտանէր արդեօք զընկեցեալն , առ անբնակ ամայութե տեղեացս ։ Այս հնարք քո է ով բանսարկու . մի՞ լինիր խափան կամաց իմոց , արծաթ քո ընդ քեզ լիցի 'ի կորուստ ։ Իսկ ընդ ասել նր զայս՝ իբրև ծուխ յերևաց հրոյ անհետ եղև սկաւառակն ։

Յետ այսորիկ՝ ոչ որպ յառաջին առ աչօք ինչ , այլ զմեծաքանակ ձոյլ ոսկի ետես արկեալ 'ի վր ճանապարհին ։ Այլ թէ զայս՝ բանսարկուն արդեօք հնարեցաւ , և կմ թէ երկնային

նայլին ինչ զօրուն եցոյց, 'ի հանդէս ընտրու-
թեն անտոնի՝ եթէ և ո՛չ 'ի ստոյգ մեծուեց
պատրի, առել ոչ ունիմք. զայս և եթ ճշմար-
տեղ գիտացաք, զի երևեալն էր ոսկի: Իսկ
նր զարմացեալ ընդ մեծուն ճաճանչեղ ձու-
լածուին, մեծաւ շտապով երագեր յընթացս
իբրև յերևաց հրդեհի փախուցեալ. մինչև
դայր հասանէր 'ի լեառն. և անցեն ը̄ գետն՝
որ անդ, գտանէ զղղեակ մի աւերակ, յո-
րում կայլին բազմուն թունաւոր զեռնոց՝ առ
տեղւոյն ամայուե, և հնուե ժամանակին:
Ընդէն օթևվանս կալաւ իբրև նորեկ հիւր.
և ընդ մտանել նր՝ յոքնախուռն բազմունք
օձիցն վաղվաղակի ոմն 'ի հալածչէ վարեալք՝
փախեան 'ի տեղւոջէ անտի: Եւ նր խցեալ
վիմօք զմուտն, հանդարտեաց անդ առան-
ձինն, ունելով ը̄ իւր պաքսիմատս վասն վեց
ամսոց ըստ սովորուեն թեբայեցւոց, (զի և
զամն ողջոյն մնան ստէպ առանց ապականու-
թե,) և զաւկաւ ինչ ջուր: Եւ ո՛չ երբէք ե-
լանէր անտի, և ո՛չ զոք ընդունէր առ ինքն. զի
և յառնաւ նր զհաց երկիցս 'ի տարւոջ, զոր
արկանէին 'ի վերուստ կողմանէ յարկին,
լուռ ընդունէր, և ոչ մի ինչ խօսելով ընդ
բերողսն:

Եւ լինէր իբրև ընթանային առ նա բզմք՝
փափաքելով տեսուե նր, և կամելով հարցա-
նել ինչ 'ի նմանէ, եկեն ագանէին զցայգ առ
դուրս նր. և լսէին 'ի ներքուստ զձայն խու-
ժանի ընդդէմ անտոնի, և զաղմուկ ոգորե-
լոցն ը̄ նմ, որք ասէին. Օ՛ի մտեալ բնակեն
ես դու 'ի յարկս մեր. զի՞ կայ քո՝ և անապա-
տի.

տի . 'ի բաց զնա յօտարին սահմանաց . չեմ դու կարող ընակել աստ, և ո՛չ հանդարտել յերեսաց հնարից մերոց ։ Իսկ որք արտաքոյ կային, համարեցան զառաջինն թէ դուցէ արք ոմանք սանդուղս եդեալ՝ 'ի ներքս մտեալ իցեն, և կազեն ը՟ նմ՟ ։ Այլ իբրև ը՟ ծերպան 'ի ներքս հայեցեալ տեսին և ո՛չ զոք, ծանեան՝ եթէ դևք են՝ որք կռուէին ը՟դէմ ն՟ր ։ և յահի լեալ՝ զանտոն կարդային յօգնութ՟ի ։ Իսկ նորա մերձեցեալ 'ի դուռն՝ քաջալերէր զեղբարսն, զի մի՛ երկիցեն, և աղաչէր զն՟ս երթալ անտի ։ Իսկ 'ի զանգիտելն ն՟ց՝ ուսուցանէր զն՟ս, թէ ո՛չ ուստեք է երկիւղդ այդ, բայց եթէ 'ի դիւաց ։ Իսկ ասէր . կնքեցէ՛ք զանձինս ձեր նշանաւ խաչին, և երթիջի՛ք խաղաղութ՟բ յապահովս . և թողէ՛ք ն՟ց անձամբք զանձինս խայտառակել ։

Ապա դարձան 'ի նմանէ, և անտոն մնայր անդէն անսասան . և ո՛չ երբէք վատտակեալ լքանէր յերեսաց մրցանաց ։ Վասնզի որ քան զոր առաւելութ՟ի յառաջադիմութ՟է ն՟ր, ո՟պ և տկարութ՟ի հակառակորդաց ն՟ր, կարի յոյժ թեթևացուցանէին զմարտ նորա, և ևս քան զևս սրտապնդեալ հաստատէին զոգի ն՟ր ։ Իսկ եղև իբրև միասանգամ հասանէին ամբոխն յանապատ անդր, համարելով զնա այնուհետև գտանել մեռեալ, լսէին՝ զի նա 'ի ներքուստ սաղմոսէր այսպ՟ . * Յարիցէ ա՟ծ, և ցրուեսցին թշնամիք ն՟ր . փախիցեն ատելիք ն՟ր յերեսաց ն՟ր ։ Ո՟պ պակասի ծուխ՝ պակասեսցին . և ո՟պ հալի մոմ առաջի հրոյ, այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց ա՟յ ‖ ։ Իսկ դարձեալ .

ձեալ. * Ամ ազինք շրջեցան զինև, և ան-
ուամբ տն յաղթեցի նց:

Զայս օրինակ՝ եկաց անտոն յառանձնութե զամս քսան՝ որոշեալ 'ի տեսութե մարդկան: Եւ քանզի բազումք 'ի ծանօթից, և յայլոց անտի՝ որք ցանկային զհետ երթալ վարուց նր, խուռն ընթանային առ նա, և ախտաժետաց ևս բազմութի յոյժ ժողովեալ կային առ դուրս նր, և ոչ կարէին մերձենալ առ նա, մեր ուրեմն հարկեալ բռնութբ բացին զդուրսն. և այնպէս յայտնեցաւ նանց երևումն յանմատոյց սրբութեց անտի 'ի վեր երևել: Սքանչացան ամենեքին ընդ շնորհս երեսաց նր՝ և ընդ վայելչութի մարմնոյն. զի ոչ 'ի համդարտութե անտի վնասեալ ինչ էր, և ոչ յերեսաց պահոց և 'ի փորձանաց դիւաց տկարացեալ կամ այլագունեալ. այլ՝ որպ այն թէ չէր նորա արարեալ անդ աւուրս բզմ, գտաւ զօրաթագին և անարատ ը առաջին վայելչութե մարմնոյն:

Մեծ էին արդեօք սքանչելիքս. այլ սքանչելի ևս էր մաքրափայլ վայելչութի հոգւոյ նր: Ոչ երբէք տարադէպ զուարճութբ 'ի ծաղր բերեալ եղև նա, և ոչ յիշատակաւ մեղացն՝ տրտմութե կնճիռն ծնաւ յերեսս նր. որպ և ոչ մեծամեծ գովութբ՝ որոց զարմանային ը նա, ամբարձաւ սիրտ նր: Ոչ խորթութի ինչ ներգործեաց յանձին նր ամայութին անմարդի, և ոչ խստութի ինչ առթեցին 'ի նմա մշտամարտ կռիւք ընդդէմ թշնամեաց. այլ համդարտեալ հոգւով՝ անայլայլակ գտանէր յամե:

Զբազումս 'ի ձեռն անտոնի ազատեցին շը-

նորհքն

նորհքն մ̃յ յայսոց պղծոց, և 'ի պէսպէս հի-ւանդութ̃ց : Բանն նր իբրև աղի՛ համեմեալ միխիթար լինէր վշտացելոց, և ուսուցիչ տգի-տաց, և հաշտարար խռովելոց, խրատելով զա-մենեսին՝ չառնել նախամեծար և ոչինչ քան զսէրն քի : Առաջի դնէր նց զհանդերձել բարեացն զմեծութի, և զմ̃յ զմարդասիրութին. և յուշ առնէր մի ըն միոջէ զմեծամեծս նորա զանչափ շնորհս. այն՝ * Որ յիւր որդին ոչ խնայեաց, այլ վն մեր ամենեցուն փրկութե մատնեաց զնա || : Նաև անդէն վաղվաղակի բանքն արդիւնք լինէին. զի զբազմաց սիրտս յունկնդրաց անտի յորդորեցին բանք նորա, արհամարհել առ օրին զամ̃ինչ կենցաղոյս, և ընտրել զմիանձնացական վարս. և այս իսկ եղև սկիզբն բնակութե յանապատի :

Այլ որ ինչ գործեցաւ 'ի կողմանս արևե-նոյիտայ, չէ պարտ և զայնու լռութեամբ անցանել : Վասնզի իբրև կամ եղև անտօնի յայց ելանել եղբարցն որ անդ, հասեալ 'ի վտակս ինչ նեղոս գետոյն, որ լի էր խեցիգա-զանօք և կոկորդիլոսօք, աներկիւղ և ան-վնաս էանց յայնկոյս հանդերձ ընկերօք իւրովք. և միւսանգամ ողջանդամ դարձաւ անդրէն : Ապա վերստին տուեալ զանձն յառաջին իւր ճգունս, զբ̃մ եղբարս հաստատեաց իւրով առաջնորդութբ. մինչև 'ի սուղ ժամանակի լինել բազմութե մենաստանաց : Որ և ինքնին յանձանձէր հայրաբար խնամով զնոսա և զհինս 'ի միայնակեցաց ըն իւրաքանչիւր հա-սակի և ժամանակի :

Պօղոս.

## Գլուխ. Ն։

### Խրատք անարժանէ առ եղբարս վս̃ հոգեւորական գործոց։

Յաւուր միում ժողովեալ եղբարց առ սր̃ն անտոնն՝ աղաչէին զնա տալ նոցա պատուէրս ինչ վն̃ բարեկրօն քաղաքավարութե̃. և նր̃ լցեալ ա̃ծատուր հոգւով՝ համբարձ զձայնն և ասէ. Առ պահպանութի̃ ա̃մ պատուիրանաց շատ են ա̃ծաշունչ գիրք. սակայն և այս օգուտ է յոյժ, եթէ եղբարք մխիթար լիցին միմեանց փոխանակաւ 'ի ձեռն բանից մխիթարութե̃։ Հապա դուք զոր գիտէքդ՝ պատմեցէք ինձ իբրև հօր, և ես զոր միանգամ խելամուտ եղէ յաւուրս բզ̃ումս՝ իբրև որդւոց ձեզ աւանդեցից։ Արդ՝ այս լիցի իմ առ ձեզ առաջին պատուէր հասարակաց. մի՛ ոք 'ի յառաջեդեալ ընթացից փութոյ լքանիցի, այլ իբրև այն ինչ սկիզբն արարեալ՝ միշտ յաւելուլ պարտ է 'ի սկսեալն. մանաւանդ զի՝ ժամանակ ամաց մերոց առ հմեմատութե̃ անժմ̃կ յաւիտենից սուղ ինչ է յոյժ՝ և կարճատև։ Զայս օրինակ սկիզբն եդեալ բանիցն՝ լռեաց վայր մի. և 'ի զարմացման եղեալ ընդ առատապարգև բարութի̃ն ա̃յ, յաւելեալ միւսանգամ, և ասէ. Յաստի կեանս հաւասարաչափ կշռին ինչք 'ի տուրև առս վաճառաց, և ոչ աւելի ինչ առնու՝ որ վաճառէն՝ 'ի գնողէն։ Այլ խոստացեալ բարիք անանց կենաց՝ դիւրադին յոյժ 'ի ձեռս բերին։ Ամ̃ և գրեալ է,

* Թիւ աւուրց ամաց մերոց եօթանասուն ամ, ապա թէ առաւել ես՝ ութսուն ամ, եւ որ ինչ աւելի է քան զայն՝ ցաւօք եւ հեծութ.‖: Այս արդ՝ եթէ ութսուն, եւ թէ եւս աւելի հարիւր ամս՝ լիցի մեզ կեալ եւ վաստակել ՚ի գործս ա͞ն, ոչ նուազին չափով աւուրց առաջի կայ մեզ թագաւորել ՚ի հանդերձելումն, այլ փոխանակ ամացս այսոցիկ պարգեւի մեզ թագաւորութ. ա͞մ յաւիտենից: Ո՛չ զերկիր, այլ զերկինս ընկալցուք մեք ՚ի ժառանգութիւն: Ոմարմին մերկացեալ զապականացու, զգեցցուք զնոյն հանդերձ անապականութ.: Արդ որդեակք մի ձանձրոյթ զձեզ լքուսցէ, եւ մի ունայն փառացս ցանկութիւն հրապուրեսցէ:

* Զի ոչ են՝ արժանի չարչարանք ժամանակիս հանդերձելոց փառացն, որ յայտնելոց են ՚ի մեզ‖:

Մի ոք՝ որոյ թողեալ իցէ զաշխարհ՝ համարիցի, եթէ մեծամեծս ինչ եթող. զի ա͞մ երկիր առաջի մեծութ. երկնից փոքր է յոյժ եւ ընչին: Իսկ արդ՝ եթէ եւ զթովանդակ աշխարհ թողեալ էր մեր, ո՛չ ունէաք տակաւին զարժանն փոխարինել այնմ երկնաւոր օթեւանաց, հապա հայեսցի այր իւրաքանչիւր յանձն իւր, եւ անդէն խելամուտ լիցի, եթէ որ համարձակելով զփոքրիկ անդս եւ զորմս յարկաց, կամ զոսկի չափով եւեթ, չէ եւ չէ արժան պարծիլ յանձն իւր՝ ոպ͞ եթէ մեծ ինչ թողեալ իցէ, եւ ո՛չ լքանիլ՝ ոպ͞ թէ դոյզն ինչ փոխարէնս ընդունելոց իցէ: Վասնզի զոր օրինակ արհամարհէ ոք զպղնձի դրամ մի՝ առ ՚ի շահիլ զհարիւր դրամ ոսկի, սոյնպէս՝ եւ որ զա͞մրուն.

զերութի̃ բոլոր տիեզերաց 'ի բաց լքանէ , զհարիւրապատիկն առցէ 'ի ցանկալի վար֊ ձուց անտի 'ի փառս բարձրունն վերին օթևա֊ նաց ։ Այլ պարզաբար ասել , պարտ է մեզ և զայն 'ի միտ առնուլ , զի թէև զմեծութիւս մեր պինդ ունիցիմք առ մեզ , օրինօք մահու յա֊ կամայ կամս հարկ է որոշիլ 'ի նոցանէ , և յայ֊ լոյ ձեռս թողուլ․ որպ̃ և գրեալ է 'ի գիրս ժողո֊ վողի ։ Այլ զի՞ է՝ զի ոչ առնեմք զհարկաւորն կամաւոր առաքինութի̃․ և ընդէ՞ր առ սատանա֊ լոյ զերկնից արքայութի̃ , ոչ յօժարակամ՝ 'ի բաց թօթափեմք՝ զոր ունիմք կորուսանել յետս մեր յաստեաց ։

Մե՛ ինչ փոյթ լիցի առն քրիստոնէի զայնպի֊ սեաց անտի , զորս չկարէ ընդ իւր տանել ։ Զայն առաւել պարտ է մեզ պնդագոյնս խնդրել , որ տանի զմեզ յերկինս․ զիմաս֊ տութի̃ ասեմ , և զողբութի̃ , զարդարութի̃ , զա֊ րիութի̃ , զարթնութի̃ մտաց , զաղքատսիրութի̃ , զհաւատս հաստատունս 'ի քս̃ , զանբարկա֊ ցողութի̃ , և զհիւրասիրութի̃ ։ Այսցիկ զհետ երթալով պատրաստեսցուք մեզ օթևանս յերկիրն հեզոց , ըստ աւետարանին ։

'Ի միտ առցուք զանձինս մեր լինիլ ծռ̃յս տն̃․ և զի պարտական եմք ծառայել այնմ՝ որ ա֊ րարն զմեզ ։ Այլ արդ՝ որպ̃ ծառայն՝ 'ի շնորհս անցելոց իւրոց ծառայութեանց չիշխէ անսա֊ տել հրամանին՝ որ 'ի ժամուն , և որ զկնի , և ոչ յանդգնի ազատ զանձն կացուցանել յառաջիկայ գործոյ վն̃ առաջին վաստա֊ կոցն, այլ հանապազորդ փութով ( որպ̃ գրեալ է յաւետարանի , ) զնոյն պաշտէ ծառայ֊

ունի, եթէ առ շնորհս գտանելոյ յաչս Տն իւրոյ, և եթէ առ անպատուհաս մնալոյ 'ի սատտից և 'ի գանից. նոյնպէս և մեզ արժան է հպատակիլ Ածային պատուիրանաց, գիտելով՝ թէ նա որ արդարութեամբ հատուցանէ յոր ինչ իրս և գտցէ զոք, ը նմին և ունի դատել, ուր եդ ինքնին վկայութի մարգարէին ձայնիւն եզեկիելի ։ Քանզի և թշուառականն յուդաս առ ամբարշտութենն՝ որ 'ի միում գիշերի, թափուր գտաւ յամ վաստակոց աւուրցն անցելոց ։ Սորին վն պարտ է մեզ միշտ և հանապազ՝ պինդ ունիլ զփոյթ կոչման Ածնողական փառուք և ոչ հեղգանալ, քանզի և Տր ինքնին ձեռնկալու է մեզ. ում և գրեալ է, եթէ * որոց սիրեն զԱծ՝ յամե գործակից լինի 'ի բարիս ||։

Այլ վն հեզգութեն յաղթելոյ զառաքելոյն պատուէր դնել 'ի մէջ առցուք, որով վկայէր զանձնէ՝ զօրհանապազ մեռանիլ ։ Ըստ նմին օրինակի և մեք զմտաւ ածելով զմարդկային կենացս ընթացից զանստոյգ վիճակ, ոչ երբեք յանցանիցեմք ։ Զի եթէ ը զարթնուլն 'ի քնոյ՝ յերկբայս լինիցիմք յերեկոյն ժամանելոյ, և 'ի տալ հանդիստ մարմնոյ՝ ոչ վստահիցիմք տեսանել զլոյս առաւօտուց, և ամիւ ամ ուրեք անմոռաց յիշատակաւ դիւրեղծականս բնութե և կենաց մերոց՝ խելամուտ լիցուք, թէ խնամք տեսչութեն Այ զմեզ պահպանէ, այսու օրինակաւ ոչ յանցանիցեմք, և ոչ սնոտի ցանկութ ը իւիք ըմբռնեսցուք. ոչ և ը ումեք բարկասցուք, և ոչ 'ի խնդիր լիցուք ժողովելոյ զգանձս

երկրաւորս . այլ առնուել՝ ահիւ և երկիւղիւ
հնազանդութեան մահուն, և ժամ՚ի ժամէ ակնկա_
լութ քակտելոյ մարմնոյս՝ զամ աղջաւորս առ_
տուն հարցուք : ՚Ի բաց լիցի այնուհետև սէր
կանանց, և անդէն չիջցի տապ ցանկութե .
ինքնին զպարտիս մեր միմեանց շնորհեսցուք
հանապազ առաջի աչաց ունելով զգալուստ
դատաւորին, և զհատուցումն յետին . Քզի
ահագին դողումն դատաստանին, և սոսկալի
երկիւղ պատժոցն չիջուցանէ զլուցկիս դիւ_
րասահ մարմնոյս, և ը̅ նմին ՚ի վեր ունի ՚ի
գլորմանէ զվայրաքերել հոգին ը̅ գեհէժս :
Արդ որոյ՝ ամ փութով պնդուն ուշ դիցուք
եղբարք աղաչեմ յառաջեդել կէտ նպա_
տակի մերոյ : Մի՛ լիցի ուսմբք յետս ը̅ կր_
րունկն հայիլ, իբրև զկինն ղովտայ . Քզի և
տրն ասէ, * Ոչ ոք արկանէ ձեռն զմաճով՝ և
հայիցի յետս, եթէ յաջողել իցէ արքայութե
ա̅յ ‖ : Եւ ո՞ր այլ իցէ հայիլն յետս, եթէ ոչ՝
զղջալ ՚ի վ̅ր սկսելոյն, և դարձեալ ՚ի նոյն
յաշխարհական ցանկութիս շաղիլ :

Մի՛ զանգիտիցէք աղաչեմ յանուանէ առա_
քինութե անհնարին ինչ իրս կարծելով, և մի՛
օտարոտի ինն՝ կմ անմերձ թուեսցի ձեզ առ_
րայս մարզութն, որ զանձնիշխան կամաց մե_
րոց կախեալ կայ: Սերմանք նր̅ արկեալ են ան_
դաստին ՚ի բնութիս. և այսպիսի ինչ է, որ միայն
զկամս մեր խնդրէ : Հելլենացիք յածին ը̅
ծով զհետ գիտութեց, և ՚ի տարհա ընթա_
նան ՚ի խնդիր ուսուցչաց մնոտի ուսմանց .
իսկ մեզ ոչ ինչ հարկ ՚ի վ̅ր կայ ուրեք եր_
թեք երթալ, կմ ը̅ ծով անցանել՝ միցելով ը̅

ալքս, զի իմ ուրեք ըստ աւետքերս մերձ է ար- քայութիւն երկնից։ Ըստ որում և տէրն ասէ յաւետարանի. * Արքայութիւն այ ՚ի ներքս ՚ի ձեզ է ॥։

Արքայութիւն՝ որ ՚ի մեզ, միայն մղկեղէն միտս խնդրէ. Վասնզի ո՛ ոք երկրպագեսցէ ընածին մաքրութե հոգւոյն լինիլ աղբիւր և սկիզբն իմ առաքինութեց, ցորչափ իցէ անձա- ռաւ յիմ արտաքին աղտոյ։ Վասնզի իմ իրօք հաւատեմ գիտեմք զի բարի արար զնա արարիչն բարի։ Իսկ թէ լիցի մեզ յերկուծա- նուլ ըստ այդ, լուիցուք յեսայեայ որդւոյ նաւեայ, որ ասէր առ ժողովուրդն. * Ուղիղ արարէք զսիրտս ձեր առ տր իմծ իսրայէլի ॥։ Ոչ տա- րօրինակ ինչ քարոզէր և յովհաննէս յղջս առաքինութե՝ ասելով. * Ուղիղ արարէք զշաւիղս նր ॥։ Ո՞ զի յայնժամ ուղիղ լինի հոգին, յորժամ և ոչ մի ինչ արատ մոլութեց շաղախեալ իցէ ՚ի սկզբնատիպ վայելչութե նո- րին. ապա եթէ փոփոխեսցի ինչ բնութին, թիւրեալ կոչի յայնժամ։ Սեպհականն պա- հեսցի վիճակ, և ահա առաքինութի է այն։ Յաւանդ մեզ ետ այ զհոգիս մեր. արդ՝ պահեսցուք զաւանդն՝ որպէս և ընկալաք։ Ոչ ոք կարէ պատճառել զառաքինին կայմութի անձին վիճակեն։ Այն՝ որ արարն, գիտէ զարարածն. գտցէ զիւր գործածն, որպէս և ստեղծն։ Շատ է մեզ որ ՚ի բնէ զարդն. մի ապականեր ով մարդ, զոր քեզն առատա- ձեռնեաց պարգևատուն այ։ Փոխել ըզ- գործս այ՝ է ապականել։

Պօղոս.

## Գլուխ. Զ:

Զգուշութի՛ ընդդէմ չարարուեստ հնարիցն դիւաց:

Պարտ է մեզ և փոյթ մեծ ունել՛ի յաղթել բռնութե մոլեգին բարկութեն. զի գրեալ է. * Բարկութի մարդոյ զարդարութի այ ոչ գործէ ||: և դարձեալ՝ թէ * ցասկութին յղացեալ զմեղս ծնանի. և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանին ||: Հրաման է ածայինն պատգամաց, զի ամ պահպանութբ պահեսցուք զսիրտս մեր. և ամ արթնութբ և զգուշութբ տարեալ հասուսցուք 'ի կատարեալն չափ. զի թշնամիք են մեր չարահնարք 'ի կործանել զմեզ. այսինքն են դևք, ընդդէմ որոց՝ (ըստ առաքելոյն վկայելոյ) առաջի կայ մեզ անդադար պատերազմ, Քանզի՝ ասէ. * Ոչ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան. այլ ընդ իշխանութիւս՝ և ընդ պետութիւս, ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ՝ ընդ այսս չարութե, որ են 'ի ներքոյ երկնից ||: 'Ի սոցանէ անթիւ բազմութի ընդ օդս սահեալ յածին, և ոչ իսկ հեռի 'ի մէնջ շրջին խումբք թշնամեացս այսոցիկ: Այլ զորոշումն նոցին 'ի յայտ բերել ոչ իմում տկարութե է գործ, այլ՝ այլոց թողում զայդ երիցագունից: Բայց զդիւրինն և զկարևորն՝ ցց է՝ զխարդախութիս նցա, զոր ընդդէմ մեր մեքենայեն, փոքր 'ի շատէ ցուցից ձեզ.

Նախ զայն իսկ պարտ է մեզ հաստատութբ գնել 'ի մտի, զի ոչ արար ած՝ և ոչինչ, որ

լցէ չար․ և ոչ 'ի հրամանաց անտի նորա եղև սկիզբն դիւաց։ Այլ այս խոտորնակի չարութի նց ոչ բնութենն է մեղ, այլ կամացն անսաստութե։ Վասն զի բարի ստեղծան նք յայ, և անձնիշխան կամօք իւրեանց ստորանկեալ Թօթափեցան յերկնից 'ի յերկիր։ Այլ և Ը գարշ տիղմ Թաւալեալ՝ զհեթանոսական զանօրէն պաշտամունս սահմանեցին․ և արդ ես ընդդէմ մեր մախանօք բերեալ՝ քինախնդիր լինին չարութ իւրեանց, և ոչ դադարին երբէք 'ի նիւթելոյ զամ չարիս, զի մի զառաջին տեղի նց փոխանակ նց մեք ժառանգեսցուք։

Որդ՝ բազմապատիկ և զանազանեալ է չարութի նց․ զի կէսք հասին 'ի ծայրս վնասակար չարութեն, և կէսք առ համեմատութե դժնդակագունից 'ի նա՝ մեղմագոյնք Թուին։ Այլ ամենեքին առ հնրկ ը կարի ուժոյ իւրեանց մարտս յարուցանեն պէսպէս ը իւրաքանչիւր առԹից։ Սոքին մն կարի կարեւոր է ժտել 'ի տնէ շնորհս ընտրելոյ զոգիս, զի կարող լիցուք՝ կանխագէտ լինելով դաւաճանութեց և հնարից նց՝ կանգնել ընդդէմ քռնամարտ մրցանաց զմի միայն նշան յաղԹութե տրունեան խաչին։ Զայս պարգև ընկալեալ սբյն պօղոսի՝ ուսուցանէր ասելով․ * Զի չեմք ինչ անտեղեակ խորհրդոց նր ‖։ Զորոյ զօրինակի զհետ երԹեալ և մեր, պարտ է՝ զի նոքիմբք զորոց զփորձ առաք, խրատեալ լինիցիմք այլ ը եղբօր։

Ոխերիմ ատելութ են նք ըդէմ ամ քրիստոնէից, և ես առաւել՝ ընդդէմ միանձանց

ձանց և կուսանաց քմի։ ՝Ի շաւիղս դ՟ց լա֊
րեն զորոգայթս իւրեանց, և զմիտս դ՟ց չար
և աղտեղի խորհրդովք խարբալել հնարին.
այլ՝ մի ինչ երկեցուսցեն զձեզ. զի աղօթիւք
հաւատացելոց, և պահօք՝ որ առ ա՟ծ՝ իսկ և
իսկ վանեալ ցրեսցին։ Այլ մի, յորժամ առ
վայր մի դադարին, համարիջիք՝ի գլուխ տա֊
րեալ զկատարեալ յաղթութի. զի սովոր են ընդ֊
կարեվէր խոցիլ սաստկագոյնս ևս ՝ի վ՟ր յար֊
ձակիլ. և փոխել զարուեստ պատերազմին՝
եթէ խորհրդովք ոչինչ կարասցին ստնանել,
արհաւրօք զարհուրեցուցանեն, է՝ զի զկա֊
նանց, և է՝ զի զգազանաց և զզեռնոց զկեր֊
պարանս յանձինս բերել. որպէս և երբեմն
զհսկայաձև մարմին զգեցեալ երևին, և գլուխք
ն՟ց երկայնեալ մինչև ՝ի յարկս տան հասա֊
նեն. և յայլ բիւրակերպ ցնորս և ՝ի գունդս
զօրաց կերպարանին. որք առ հասարակ
յերեսաց նշանի խաչին նոյնհետայն հալա֊
ծեալ չքոտին։ Նաև ՝ի յայտնի լինել այսպիսի
հնարից խաբէութե՟ սկսանին այնուհետև
զգուշակութեց բուռն հարկանել, և ցուցա֊
նել պատմօղս լինել՝ որ ինչ լինելոց է զկնի
աւուրց։ Իբրև այսու ևս յամօթ լինին, այ֊
նուհետև զիշխանն իւրեանց չարութե և ըզ֊
գլուխն ա՟մ չարեաց կոչեն ՝ի թիկունս պա֊
տերազմի իւրեանց։

Նու յաւել հաստատել անտոն, թէ բա֊
զում անգամ տեսեալ է իմ զսատանայ ըստ
օրինակին, որով ծանեաւ զնա յոբ երանելին
՝ի յայտնութե՟ ա՟ծ. (որպէս և գրեալ է).
* Աչք նր՟ իբրև զտեսիլ արուսեկի. ՝ի բերա֊

նոյ նր̄ ղամբարք բորբոքեալք. և հաստատեին
անկանեին շանթք հրոյ՝ ի հերացն նր̄. Ը̄ անդունդ
նր̄ ծուխ ելանէ հնոցի հրոյ կայծականց։
Ա̄նձն նր̄ կայծակունք, և բոց ՚ի բերանոյ նր̄
ելանէ ||։ Ա̄րդ՝ և ինձ, ասէ անտոն, այսպիսի
ահաւոր տեսլեամբ երևեցաւ իշխանն դե-
ւաց, և մեծամեծս յոխորտացեալ բազում
անգամ խոստմամբք և սպառնալեօք, մե-
ծաբանս սնոտեաց զգայուէր լեզուաւ ամ-
բարշտութե իւրոյ. որում յաղթեաց տր̄՝ ասե-
լով ցյոբ. * Համարի զերկաթ յարդ, և զպղ-
ղինձ իբրև զփայտ փուտ. զծով իբրև զոչ-
ինչ, և զտարտարոսն անդնդոց իբրև զգերի
մի. համարեցաւ զանդունդս իւր ձեմելի ||.
Ա̄ւանիկ և մարգարէին խրոխտայ ասե-
լով. * Զհետ մտեալ հալածեցից, և հասից ՚ի
վր̄ տմ̄ տիեզերաց ձեռամբ իմով իբրև ՚ի
վր̄ բունոյ, և բարձից իբրև զձուս մնացելս ||։
Զայս օրինակ ամբարիշտն արձակելով ձայնս
մանհաչունչս՝ ստէպ որսայ զոմանս ոմանս ՚ի
բարեկրօնից։
Ա̄յլ մեզ չէ՛ պարտ ո՛չ խոստմանց նր̄ հաւա-
տալ, և ո՛չ ՚ի սպառնալեաց ինչ նր̄ զարհուրել.
զի հանապազ ստէ, և ոչ մի ինչ ճշմարիտ
բարբառի։ Զի թէ չխօսէր զտմ̄ սուտ, զի-
արդ է՝ զի այն, որ այնչափ մեծաբանէ յան-
չափս, իբրև զվիշապ՝ կարթիւ խաչին ըմբռ-
նեալ եղև ՚ի տն̄է, և եդաւ պախուրց շուրջ
զցուկաւ նր̄ ոպ̄ գրաստու, և իբրև զծառայ
փախստական նուաճեալ յանուրս, և զան-
գանաւանդ ը̄ կզակս նր̄ անցուցեալ, չունե-
լով իշխանութի և ոչ մի՝ կլնել զոք երբեք ՚ի
հա-

հաստատեցելոց։ Այժմ հիգացեալն իբրև զծնծղուկ մի ՚ի հաւուց՝ որսայեալ տուեալ ՚ի քմէ ՚ի խաղալիկ։ Այժմ ողբայ և զարբանեակս իւր տուեալս ՚ի կոխան ոտից քրիստոնէից իբրև զօձս և զկարիճս։ Այն՝ որ զհամատարած ծովն՝ իբրև առ ՚ի յիւրմէ ապականեալ՝ մեծաբանէր, այն՝ որ խիզախէր ՚ի թուխն ունիլ զտիեզերս ամ, ահա արդ առ ՚ի ձէնջ յաղթի. ահաւասիկ և ոչ զիս կարողինչ է արգելուլ առ ՚ի չխօսելոյ յանդիմանն ձեր ամբցն հկուկ անձինն նր։ Այլ ամիբ անդռոննելի է՝ որդեակք՝ մնապարծ գոռոզունր բանիւք մնոտւովք։ Փայլկնաձևն այն շողիւն՝ որով կերպարանի դևն լուսափայլ ծագել, չէ ճշմարիտ լուսոյն ճառագայթ, այլ նշանակ է բոցոյն, որով կիզեալ տոչորեսցի. քանզի արագ արագ անհետ եղեալ զկերպարանս պատժոց իւրոց ը իւր առեալ տանի։

Այլ ով յետքն յանդգնուէ այսոցն չարաց. քանզի և սովոր իսկ են երևիլ երբեմն՝ երգս սաղմոսաց ՚ի բերան ունելով և յեղանակելով. ով և զայլ ասացուածս ածեղէն տաուրց պիղծ բերանով իւրեանց ոտնձեն։ Քանզի բազում անգամ յընթեռնուլ մեր անդ, կրկնեն անդրէն իբրև ՚ի ձայն արձագանգաց փոխաձայնեն բանիցն վերջնոց։ Նաև ՚ի ննջելն զարթուցանեն յաղօթս, զի զողջոյն իսկ զգիշերոյն հատցեն զքուն։ Նաև դրձլ առ բզիմ ՚ի միայնակեցաց եղեալ ՚ի կերպարանս արդոյ միանձանց, յանդիմանեն և խրատեն, և զպաշարին յանցուածսն՝ որոց

ինքնին են դիտակք՝ յանուխման հարկանեն. Այլ պարտ է 'ի բաց անարգել զսաստ յան_դիմանութէ նց, և զխորատս պահեցողութէ, և զնենգաւոր թելադրութիս առ տքնութի: Բան_զի յայն սակս յանձին կրեն զընտանին մեր զկերպարանս, զի նմանութբք առաքինութեց տեղի գտեղ՝ դիւրաւ սերմանեսցեն զթոյնս իւրեանց 'ի մեզ, և զպարզամիտս յանմեղաց պատրուճակաւ բարեկրօնութէ մոլորեցուսցեն: Իսկ ապա այնուհետև անհնարին և խիստ ցու_ցանեն զայս փոյթ ձգանց. ոպ զի՝ իբրև այն ինչ ծանրաքեռն մեզ թուիցի՝ յոր սկսաք, յանյուսութի ըմբռնեղ՝ անկցուք 'ի ձանձրութի, և 'ի ձանձրութէ 'ի հեղգութի: Վն այսորիկ մար_գարէն տծառայք գոյժ տուեղ՝ մեծաձայն գոչէր ասելով. * Վա՛յ որ արբուցանէ ըն_կերի իւրում հրապոյրս պղտորս ‖: Օ ի այս_պիսի հրապոյրք յորդորանաց նց խփնիչք են ճանապարհին, որ տանի յերկինս: Սմին իրի իբրև եկն տրն մեր յՔս, և դեռ բռնադա_տեղ՝ զճշմարիտն քարոզէին զնմանէ, (քզի ճշմարիտ ասէին. * Դու ես քս որդի այ կենդանւոյ ‖, ) պապանձեցուցանէր զբերանս նց արձակիչն կապեղ՝ լեզուաց մարդկան, զի մի՛ ըն ճշմարիտ քարոզութեն զչարութէ իւ_րեանց թոյնս խառնեսցեն. և զի՝ նաև մեզ տն օրինակի նր՝ թէև յօգտակարսն յորդո_րեսցեն զմեզ, մի՛ և մի՛ իւիք հաւանեսցուք նց. զի արդարև ոչ է արժան մեզ՝ յետ ձո_խանալոյ տծաձիր ազատուբ, և կենսատու պատուիրանօք նր գրոց՝ 'ի բանսարկուէ անտի ընդունիլ զխրատս կենաց. այն՝ որ է_

թող

Թող ելից զկարգ իւր, և ժպրհեցաւ ձեռն մխել յանձեռնարկելի իշխանութիւն քննի։ Յայն սակս և տէր սաստէր նմա ՚ի բերել անդ նորա բանս ՚ի գրոց. զի * ասէ Աստուած ցմեղաւորն. Իսկ դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւնս իմ, կամ առնուս զուխտ իմ ՚ի բերան քո ||։

Ոամ հնարս կեղծաւորին դևք. բազում անգամ խօսակից լինին ընդ եղբարս. յոլովակի ևս ամբոխ արարեալ խառնաձայն ձայնս արձակեն, ձեռն ՚ի ձեռն տան, շչեն, ճչեն, և ծիծաղին յիմարաբար. զի գէթ առ վայր մի սպրդեսցին մեղք ՚ի սրտս քրիստոնէից։ Այլ իբրև ՚ի բաց հալածին յամենեցուն, այնուհետև ՚ի ձայն գուժի և ողբոց յայտ առնեն զտկարութիւնս իւրեանց։ Իսկ տէրն մեր որպէս Աստուած և գիտակ իւրում մեծվայելչութեան տիրաբար հրամայէր չար դիւացն պապանձիլ. այլ մեք նայելով ՚ի գնացս սրբոց՝ ընդ նոյն ճանապարհ ընթասցուք, որք այսպիսի պատերանաց քաջ տեղեակ գոլով երգէին ասելով. * ՚Ի հակառակել մեղաւորին առաջի իմ՝ լուռ եղէ, և խոնարհեցայ, և լռեցի ՚ի բարութէ ||։ Եւ դարձեալ. * Այլ ես որպէս խուլ՝ զի ոչ լսէ, և որպէս համր՝ որ ոչ բանայ զբերան իւր։ Եղէ ես որպէս մարդ, որ ոչ լսէ ||։ Տէրն մեր որպէս զտէր պատուիրէր լուռ լինիլ. մեք բնաւ մի ինչ հաւատասցուք բանսարկուին, և այսու յաղթեսցուք նմա։ Եթէ յաղօթս ստիպեն, եթէ ՚ի պահս յորդորեն, ոչ ընդ խրատու նոցա, այլ ընդ կարգի մերում սովորութեան զայդ արասցուք։ Եւ ոչ

այս-

այսչափ միայն, այլ Թէև ՚ի վ՟ր մեր դիմեալ մահու սաստակել զմեզ կամիցին, առաւել պարտ է ծիծաղել զնոքօք, քան երկնչել ինչ. զի որովհետև օտարք են, զամն սպառնան ներթ, և ոչ եԹէ առնել ինչ կարող են: Որդ՝ այսչափ ինչ հարևանցի ներթ խօսեցայ ը՟ ձեզ վ՟ն սոցին իրաց. այլ արժան է և ևս ընդարձակագոյնս մեկնել. զի ոչ սակաւ զգուշութի բերէ երկրորդելն զնոյն:

---

## Գլուխ. Ե:

Որպէս ետալ խրատ զգուշութեան՝ յայտարարութիւն անպիտան զօրութեան դիւաց:

Ընդ դալ փրկչին մերոյ յ՟ի՟՝ խորտակեցաւ Թշնամին, և ամ՟ զօրուԹին նր՟ տկարացաւ քակաւ: Նոյ յիշելով զառաջին իւր զօրութի, և տեսանելով զկործանումն անձին իւրոյ, իբրև զառնաւոր հնացեալ աւուրբք չարութե հնարի բռնագոյնս յարձակիլ ՚ի կորուսանել զմարդիկ. այլ ոչ կարէ խախտել պէսպէս խորհրդովք և բիւրազգի դաւաճանութեանց հնարիւք զհաւատս՝ որ յամ՟ հաստատեալ իցէ: Վասնզի յայտ իսկ է ամ՟ իրօք, զի և ոչ մարմին մարդկային ունին ոսոխքն մեր, որով պատճառս գտցեն՝ եԹէ դրօքն փակելովք չկարեմք մուտ գտանել ՚ի ներքս անդր, և յաղԹել նց՟: Այլ արդարև եԹէ ը՟ այս մարմնոյ տկար կապեալ էին և անմարմինն Թշնամիք մեր, ՚ի փակել մտիցն՝ արգելուլին ՚ի մտանելոյ ՚ի ներքս: Բայց քանզի ը՟ սաստելոցս՝ յայսպիսի

կա-

կապանաց ազատ են, և ընդ փակել մուտս թափանցանց մտանեն, և ընդ նմ օդս համարձակ յածին, յայտ ուրեմն է, զի առ նոցին եւեթ ակարութե կայ մնայ մարմին եկեղեցւոյ անստասան ։

Իսկ զարձել՝ պաշտօնեայքն անօրէնութե համդերձ քանսարկու իշխանաւն իւրեանց, (զորմէ փրկիչն՝ Իշխին մկայէ յաւետարանի՝ լինել մարդասպան 'ի սկզբանէ, և հայր չարութե) ոչ երբէք տեղի տային արդեօք՝ 'ի պատերազմել ընդ մերում ընդդէմ նց սաստկութբ, եթէ չէր բարձեալ իշխանութի նց ։ Ապա թէ ոչ՝ եթէ սուտ իցեն բանքս, զի՞ է՝ զի խնայէ 'ի մեղ ստատանայ, որ Ը նմ վայրս մոլեգին յածի. և զիարդ՝ որ և ոչ 'ի միում տեղւոջ փակի, չէ՞ ձեռնհաս խախտել աստանօր զհաստատութի այնոցիկ, որք Ը դէմ կամաց նորին կեան բարեկարգութբ, և մրցին բանիւն Ճշմարտութե ։ Մի՞ արդեօք սիրիցէ ինչ զմեզ, զորս զօր նմ հնարի կործանել. կամ թէ՝ հնար ինչ իցէ նմ ուսուցիչ բարւոյ լինել, և ձեռնտու բարեկրօնից, և ոչ զմխասակարս նոցին խորհիլ ։ Իսկ զինչ այլ նմին այնպէս հաճոյ՝ որպէս վնասել, առաւել այնոցիկ՝ որք քաջութբ զինուն ընդդէմ նորին չարութե. որպէս և գրեալէ. (Սիրաք. ա). * Օ 'ի պիղծ է առաջի մեղաւորի բարեպաշտութի ։ Ո՞ այլ ոք ամենչարութե իբրև զնա. ո՞ ոք այլ դարանակալ անօրէն՝ 'ի գլուխ տանիլ զչարարուեստ հնարս խորհրդոց ։

Գիտեմք զնա գէշ անպիտան լի ժահահոտութբ. գիտեմք՝ զի յայն սակս կենդանի եմք

քրիս-

քրիստոնեայքս, և ան վեհեր ունիմք յառնել ընդդէմ նո՛ր, վա զի նկուն եղև 'ի մ՛նէ: Այս և նա ինքնին յիւրոց նետից խոցոտի, զի անգործ են սպառնալիք նո՛ր: Այլ թէ խաբիմ զայս ասելով, զի՞ է՝ զի կեղծուպատիր արհարօք, և այլանդակ ցնորիւք 'ի մ՛ր յառնէ հաւատայելոցս: Եթէ 'ի կամս ինչ է նորա կարել, կամիլն ևեթ շատ էր նմա: Օ ի այս օրէնք են կարող ձեռին զօրութ՛ն, ոչինչ արտաքին սատոր խաբէութ՛ն խնդրել, այլ իրով զօրութ՛բ զիրսն վճարել: Որդ՝ որովհետև ըստ թատերաց հանդիսի կերպարանափոխ ձևով հնարի իբր ծպտանօք խաղարկուաց խաբել զտհաս մանկութ՛ն, յայտնագոյնս ցուցանէ, թէ թափեալ է գլխովին յանձին զօրութ՛է: Տեսէք զճշմարիտ հրեշտակն, որ առաքեցաւ 'ի մ՛նէ ընդդէմ ասորւոց, եթէ կարօտացա՞ւ նա երբէք նիզակակցացն ամբոխի, կամ թէ պէտք ի՞նչ եղեն նմա շառաչման ձայնից, և խիզախելոյ 'ի պատերազմի: Ո՛չ ապաքէն զգաղտնի զօրութ՛ն 'ի կիր արկեալ՝ զհարիւր ութսուն և հինգ հազարս 'ի քըթթել ական տապաստ էարկ 'ի թշնամեաց անտի՝ ըստ հրամանի մ՛ն զօրութ՛ց: Իսկ չար հրեշտակքն՝ որք են դևք, յայտ տկարութ՛ն անպիտանութ՛ն անկեալ դնին, զի մշտնջենաւոր կործանումն և բեկումն կորստեան զհետ ընթանայ նոցին:

Ապա թէ դէպ լիցի ումեք ասել. իսկ զիա՞րդ սա՛նայ ելեալ յերեսաց մ՛ն՝ զա՛մ զատուածն երջանիկն յոբայ յապականութ՛ն եդ. և զիա՞րդ զնո՛ր զա՛մ մեծութիս ցիր և ցան ծախեաց, և

զատուածն

զտունսն հարեալ հիմն 'ի վեր կործանմամբ , զուստերս և զդստերս նր 'ի միում անդ գերեզմանի լցոյց , և զնա եհար չարաչար կեղով յոտից մինչև ցգլուխ ։ Այլ որ զայս խորհի , լուիցէ զհակառակն . զի ոչ եթէ սատանայ կարօղ եղև առնել զայդ , այլ ինքնին ած, որ կրկնակի օրինօք տայ նմ իշխանութի յառնել 'ի մեր վր . այս է , կամ 'ի փառս , եթէ ընտիր գտանիցիմք . և կամ 'ի պատիժ , եթէ յանցանիցեմք ։ Նա և զայն իսկ 'ի միտ առցէ աստի՝ որ զայդ ասէ . թէ դևն և ոչ միում ումեք 'ի մրդկանէ կարօղ է առնել ինչ, եթէ ոչ 'ի տնէ ընկալցի զիշխանութի ։ Զի ոչ ոք է՝ որ յայլմէ խնդրէ , զոր ը իշխանութբ իւրով է ։ Այլ՝ զինչ ասեմ զյոբայ, զոր և անյագ յարձակմամբ խնդրեն չեղև բաւական կործանել . այլ և ոչ յանասունս անգամ և 'ի խաշինս նր , ոչ և ոչ 'ի խոզսն զորոց գրի յաւետարանի , իշխեաց ձեռն արկանել առանց ունելոյն առ յայ հրամանի ։ Զի գրեալ է , թէ * դևքն աղաչէին զնա , և ասէին . եթէ հանես զմեզ աստի , հրամայն տուր երթալ յերամակ խոզիցն ‖ ։ Իսկ զիարդ՝ որք զ'ի խոզսն մտանել աղաչելով խնդրեն 'ի նմին իսկ 'ի տնէ , զպատկեր այ զմարդն՝ զիւրոյ արարչի զսիրելին 'ի կենդանիս , կարօղ իցեն իբր ինքնիշխանութբ կործանել ։

Աւրելիք՝ մեծ զէնք ընդդէմ դիւաց են անկեղծ վարք , և անբիծ հաւատք առ ած ։ Հաստատեցէք ինձ փոքր եղելոյս . մեծապէս երկնչի դևն 'ի փութոյ կրթելոցն 'ի բարիս .

'ի

'ի տքնութեանց ասեմ, և յաղօթից, 'ի պահոց, 'ի հեզութէ, 'ի կամաւոր աղքատութէ, յարհամարհութէ սնոտի փառաց, 'ի խոնարհութէ, յողորմութէ, 'ի յաղթելոյ բարկութե. և 'ի վերայ ԺԲ զամ 'ի նոյն սրտէ, որ առ սէրն քո։ Աւաղ գիտէ օձն վատթարել, եթէ 'ի հրամանաց Ա̅ծ̅ տուեալ 'ի կոխան առնից արդարոց, յասել անող. * Ահա ետու ձեզ իշխանութի՝ կոխել զօձս և զկարիճս, և զամ զօրութի թշնամ-ւոյն ‖։

Ապա եթէ և գուշակութեանց գիտակ զանձինս երևեցուցեն, կանխաւ ծանուցանիցեն զգալուստ եղբարց, և եկեղ հասանիցեն՝ զորոց միանգամ գուշակեցինն, սակայն և ոչ այնմ հաւատալ պարտ է խաբեբայիցն. զի վասն յառաջէն քան զգալ եղբարց, վասն զի դիւրաւ ձգեսցեն ըստ զ'ի հաւատալ աղդեցութե նց, և այնուհետև տեղի գտցէ 'ի միտս դիւրահաւանս պատրանք խաբէութե նց։ Այլ ոչինչ արժան է զարմանալ քրիստոնէին ընդ այդ. որովհետև ոչ դոքա միայն, որք թեթևութ բնութե ընդ ամ անցանեն, կարող են քան զհետի ընթացողս յառաջել, այլ և մարդիկ գլխովին յընթացս սաստկութե երագոտն երիվարաց կանխագոյն հասել պատմեն զգալոցն։ Զի ոչ եթէ պատմեն ինչ յայտ-ցանել, որք չև ևս սկսան լինել, քանզի Ա̅ծ̅ միայն է իրագէտ հանդերձելոց. այլ զորոց զսկիզբն տեսանեն արդեամբք, զնոցին և կծանօթութի՞ գաղտագողի հայթայթանօք պատմեն անծանօթից։ Որպէս և բժիշկ իսկ իցեն 'ի նմին, որոց գործ մի դիւրին է տղայոցն-

թայ

թաց վաղիւք երթալ պատմօղ լինել և կարե հեռաւորաց մինչ ժողովոյս այսորիկ, և մինչ բանից մերոց, որ ընդդէմ նոցա, նախ քան զպատմել ուրուք ՚ի ժողովելոց աստի։

Նա և զոր առեմս, մարթ է և օրինակօք յայտնի կացուցանել։ Զոր օրինակ՝ եթէ ոք ՚ի Թեբայիդոյ՝ կամ ՚ի քաղաքէ ուստեք իւիք գաւառի յուղի անկանիցի, տեսեալ զնա դիմաց գնալ զայն Ճանապարհ, կարեն այնուիկ երագութեամբ իւրեանց յառաջագոյն պատմել զգալուստ նորա։ Զնոյն առնեն և յաղագս երևելի յորդութեան նեղոսի. իբրև տեսանեն զանձրևս յորդառատս՝ որ յեթովպիա, որովք ընդ սովորութեան առատացեալ գետոյն՝ ունի զեղուլ քան զսահմանս իւր, վաղագոյն ընթացեալ յեգիպտոս՝ պատմեն զհասանս յորդութեան գետոյն։ Զայս՝ դիւրին էր արդեօք և մարդկան գուշակել, եթէ էր և նոցա այսպիսի արագութիւն բնութեան։ Զի ոչ դէտն երանելւոյն դաւթի եւեթ ՚ի դիտանոց անդր, յառաջագոյն քան զնա՝ որ ՚ի ճանապարհ էին, տեսօղ լեալ եկելոցն, ոչ զանստոյգ ինչ զհանդերձելոց իրաց պատմէր, այլ տիրապէս զնոցանէ՝ որոց սկսեալ էր գալ, ծանուցանէր. ընդ սմին օրինակի և դևք աննիրհելի տքնութեամբ դիտելով զոմն՝ սրաթռիչ ընթացիւք ազդեն իւրեանց։ Բայց եթէ դիպաք ինչ լինիցին, զի ընդ ակնարկութեան ոչ՝ սկսեալն ոչ ՚ի գլուխ ելանիցէ. ոչ այն՝ եթէ ճանապարհորդն ՚ի կէս ճանապարհէ անտի ընդ կրունկն դարձցի. կամ ջուրք՝ որ յամսյս պատրաստեալ, յայլ կողմն երկնից բերիցին, յայնժամ ՚ի վեր երևի ստուեն

սուտն մոլորութեան որոց խաբեցինն և որոց հաւատացին։

Այս եղեն սկզբունք հեթանոսութեան. այսպիսի նենգանօք ըղձկատում գուշակողաց 'ի բագինս անդ հաւատոյն պատգամաց դիւաց։ Արք 'ի գալստեան տն մերոյ յետ քնի լռեալ համրացան, և զգերեալսն 'ի պատրանս իւրեանց կորուսին։ Այդ է, զոր ուրուք տեսեալ զբժիշկն, յորժամ 'ի բաղխմանէ անտի երակաց գոյզն կարկառմամբ մտաստանցն ճանաչէ զջերմութին արտին տապացելոյ, համարեսցի զնա 'ի ծեղեն ունել գիտութի՝ առ աներևոյթ ախտին զննութե։ Ոզնաւուղիղ երթէք, որ զշաւիղ նաւարկութե իւրոյ յաստեղս երկնից հետազօտէ, մեծաշուք փառօք փառաւորեսցէ։ Ոզայր հողագործ, որ գիտէ ճանել զանջրդի տապոյ ամարայնոյ, կմ զառատութէ ջուրց և զսառնամանեաց ձմերայնոյ, ըծանման անունամբ պատուեսցէ, և ոչ փորձիւ տեղեկացեալ առդիցէ։

Բայց արդ՝ թէպէտև յանձին կալցուք, եթէ դևք ստուգագոյն ինչ երբեք ծանուցանեն. այլ զինչ պտուղ 'ի ճանաչելոյ անտի զլինելոցս, տուք պխի։ Միթէ որ գիտակն եղև այդմ, գովեցաւ, կմ որ անգէտ գտաւ՝ պատժեցաւ երբէք։ Յայսմ ևեթ այր իւրաքանչիւր պատրաստէ անձին զտանջանս՝ կամ զփառս. զի եթէ պատուիրանաց զանց գտանիցի, և կամ պատուիրանապահ 'ի ծայրն օրինաց։ Եւ ոք 'ի մէնջ բուռն եհար զայսմ կենաց՝ զի յառաջգիտութիւնիցի զհանդերձելոց իրաց, այլ զի հայա-

 տա-

տակելով տէր պատուիրանաց՝ ՚ի ծառայութէ անտի ոչ ՚ի բարեկամութի անդր նոր ՚ի վեր ելանիցէ։ Փոյթ կալցուք՝ ոչ նախագէտ լինել՝ որ ինչ լինելոցն է, այլ՝ զհրամայեալսն մեզ կատարել. և ոչ բարեկրօնութես փոխան զայնպիսի խնդրել վարձս, այլ առաւել հայցել յօգնականութէ տէր զյաղթութի ընդդէմ սատանայի։

Այլ թէ կամք իցեն ումեք զհանդերձեալսն ճանաչել, սիրտ ոք ունիցի այնպիսին. քանզի հաւատամ աներկբայ, զի անձն՝ որ ծառայէ ոյ, առաւել քան զդևս ունի գիտել. միայն թէ կացցէ մնասցէ յանարատութե՝ յորում հաստեցաւն։ Այսպիսի էր հոգին եղիսէի, որ զառ ՚ի յայլոց ծածկեալ զզօրութիւն տեսանէր։

## Գլուխ. Ը։

### Պատուէրք անտոնի վասն ընտրելոց ոգւոց։

Եւ արդ զայլ ևս խորհուրդս դիւաց յայտնեցից ձեզ։ Դևան երբեմն ՚ի գիշերի կերպարանելով ՚ի հրեշտակ ոյ. գովել սկսանին զփոյթն ճգանց. հրաշանան է անդրդուելի համբերութիւն, և խոստմունս ՚ի վր բերեն զհանդերձելոց վարձուց։ Օ որս իբրև տեսանիցէք, սպառազինեցէք զանձինս ձեր և զբնակութիւն նշանաւ խաչին. և վաղվաղակի անհետ լիցին։ Վասնզի սարսեալ դողան ՚ի նշանէ անտի յաղթութէ, որով փրկիչն մեր-

ժամ խօսեցաւ Էր զաքարիայ 'ի տաճարին, և հրեշտակք՝ յորժամ աւետարանեցին հովուաց զա̃ծային ծնունդն՝ որ 'ի կուսէն, և որք երևեցանն կանանց առ ա̃ծային գերեզմանաւն, հանդարտութեամբ զանձինս ցուցանելով տեսողացն, հրամայելին՝ մի՛ ինչ երկնչիլ ։ Ս̃ն զի երկիւղն ոչ միշտ 'ի զարհուրանաց հոգւոյն, այլ՝ բազում անգամ 'ի տեսլենէ մեծամեծ իրաց 'ի վ̃ր հասանէ ։

Իսկ չար ոգւոցն տեսիլք դժնէհայեաց, ձայնք նց̃ զարհուրելի, և խորհուրդք գարշելի. կայթումն և շարժումն իբրև անխրատ երիտասարդաց, կի̃մ աւազակաց. յորոց նոյնժամայն 'ի վ̃ր գայ դողումն սրտի, թմրութի զգայութեց, ատելութի քրիստոնէութե, տրտմութի և տաղտկութի կրօնաւորութե, ընտանեաց յիշումն, երկիւղ մահու, յօժարութի առ չարիս, լքումն յառաքինութեց, և կուրութի մտաց ։ Նրդ՝ յետ երկիւղին՝ որ 'ի զարհուրանաց անտի, եթէ 'ի վ̃ր գայցէ աներկևան խնդութի և առ ա̃ծ ապաւինութի, և անճառելի սէր, ծանիցուք՝ եթէ եհաս վերին օգնականութի ։ Քանզի աներկևանութին այն սրտի՝ նշանակ է մերձ լինելոյ մեծվայելչութեն ա̃յ ։ Ոի այսպէս և նահապետն աբրահամ տեսեալ զա̃ծ՝ * ուրախ եղև ‖ ։ Նա յովհաննէս՝ իբրև գիտաց զգալուստ մարիամու, որ կրէր յօթարանի մաքուր արգանդին զարարիչն բոլորից՝ ցնծացաւ ուրախութք՝ մինչև էր ծնեալ ։ Նա. եթէ երկիւղն 'ի վ̃ր եկեալ՝ կայցէ մնացէ խապաւ, թշնամւոյն է տեսիլն. որ ոչն գիտէ անդէն վաղվաղակի քաջալերել, այլ երբեմն

գաբրիէլ զկոյսն խօսելն. և ոչ ինչ պատուի-
րէ չերկնչիլ, զոր օրինակ զհովիւսն քաջալե-
րեցին աւետաւոր զուարթունքն. այլ առա-
ւել յանձնէ զերկիւղն, և 'ի խորս անդր
ամբարշտութեան խորդաւանել փութայ՝ ձգե-
լով զմարդիկ յերկրպագութիւն իւր։ Որով և եղ-
կելի հեթանոսքն՝ անծանօթք աստուածայինն օրէ-
նացն զգուշութեան՝ պատուէր սուտս, զդ և աստուածս
համարեցան։ Բայց ժողովրդեանն քրիստո-
նէից ոչ եւս թոյլ տայր թակարթիլ յայսպիսի
պատրանս մոլորութեան. այն՝ որ ըստ աւետարա-
նին՝ զյանդուգն թեկնածու ամենայն իշխանութեան
զսատանայ՝ 'ի բաց մերժեաց ասելով. * Երթ
յետս իմ սատանայ. զի գրեալ է. տեառն այ քում
երկիրպագցես, և զնա միայն պաշտեսցես ‖։
Օնոյն և մեզ օրէն է ասել տիրական իշխա-
նութեան. զի յայն սակս խօսեցաւ նա զայսպի-
սիս, որպէս զի և մեք զնմանօրինակ փորձանս
չարին վանեալ խորտակեսցուք ինքնասաց բա-
նիւք տեառն մերոյ։

Եւ կայս ևս յիշեցուցանեմ ձեզ սիրելիք, զի
փոյթ ձեր եղիցի առաւել զվարուց բարեաց,
քան զնշանագործութեանց։ Մի ոք 'ի ձէնջ՝ որ զս-
քանչելիս գործիցէ, անձամբ յանձին փքա-
նայցէ, և կամ անգոսնեսցէ զորս ոչ են
կարող գործել զայնպիսիս. այլ առաւել հայ-
եսցի 'ի բարւոք քաղաքավարութիւն իւրաքան-
չիւր անձին, և բարւոյն նախանձաւոր լինիցի
'ի յառաջադէմսն նկրտիլ, և ընդունել զթերին։
Քանզի նշանս գործել ոչ տկարութեան մերոյ է
գործ, այլ տեառն զօրութեան. որ առ աշակերտսն
խնդամտեալս յանձինս ասէ յաւետարանի
անդ.

անդ. * Մի՛ խնդայք, եթէ այսք հնազանդին ձեզ. այլ խնդացէք, զի անուանք ձեր գրեալ են յերկինս ||: Վասնզի գրութիւն անուանց ՚ի դպրութեան կենաց՝ է վկայ առաքինութեանց և արդեանց. իսկ զդևս հանել՝ շնորհք է փրկչին: Ոչ և առ այնոսիկ՝ որք ոչ են վաստակս առաքինի վարուց, այլ են նշանս հրաշից խնդայցեն՝ ասելով. * Ոչ յանուն քո դևս հանաք. և յանուն քո զօրութիւնս բազումս արարաք. պատասխանի տացէ տր, և ասասցէ. Ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ գիտեմ զձեզ. ՚ի բաց կացէք յինէն ամ մշակք անիրաւութեան ||: Զի ոչ ճանաչէ տր զճանապարհս ամբարշտաց: Ապա ամ փութով զայն խնդրեսցուք, զի արժանաւոր գտցուք ընդունել զպարգևս ընտրելոյ զօրգիս. որով և եմք խրատու ածային գրոց, * Մի՛ ամ հոգւոյ հաւատասցուք ||:

## Գլուխ. Թ.:

Հաստատութիւն նախաշարգեալ խրատուց՝ օրինակաւ քաջանաց, որք անցինեալք անցին անտանի:

Արդ՝ կամիմ վախճան առնել բանիցս, և լռել զանցից անցելոց իմս ես տրուպս. բայց զի մի վայրապար համարեսջիք զառ յինէն յիշատակեալս, ոչ թէ դժուարահաւանին իբրև երևեցին ՚ի դիպին, վն որոյ (թէպէտ և անզգամ եմ եղէց, բայց սրտագէտն ած վկայէ, զի ոչ վն անձին իմս պարծանաց, այլ վն ձերոյ յառաջադիմութեան զայն առնեմ),

տունեմ) , զտակաւս 'ի բազմաց անտի յիշա-
տակեցից ։

Մերշափ և Զանայինն դևք մեծամեծ գոյութեք զիս բարձրացուցանել , եւ անուանք նորա անեծս կարդային 'ի մէջ նոցա ։ Քանիցս անգամ և պատմէին զմերձակայ յորդութեն գետոյն Նեղոսի , զայսպիսի պատասխանի լսէին յինէն ։ Նա ձեզ զի փոյթ է մի այնորիկ ։ Քանիցս անգամ ահագին սպառնալեօք դիմէին 'ի վերայ իմ իբրև զգունդս զօրականաց վառելոց և շուրջ պատեալ զինև 'ի նմանութիւն կարկաց ձիոց գնդաց, և աղբի աղբի սողնոց, ընդ ուժին զնետղին յորում նստէի , եւ հակառակ նոցա արարմոս առնէի ։ * Մեք կամօք , և նոք երկիւղալրօք ։ այլ մեք զանուն նորա մերոյ կարգացուցք ‖ ։ և վաղվաղակի ողորմութեն քեզ 'ի բաց փախչէին ։

Իսկ 'ի միում նուագի սաստիկ լուսով եկեալ առեն ցիս ։ Ո՞վ տոմարիկ՝ եկայք ցուցանել քեզ զփայլուսն նշուլից մերոց ։ Նա իմ կափուցեալ զաչս , զի ոչ արժան համարէի հայել 'ի լոյս բանսարկուին , յաղօթս կայի ։ և անդէն վաղվաղակի շիջանէր լոյս խաւարասիրացն ։ Նա յետ սակաւ ամաց՝ իբրև սաղմոսէին առաջի իմ , և բանն 'ի մէջ արկանէին 'ի գրոց է միմեանս , ես որպ զխուլ՝ ոչ ինչ լսէի ։ Յայլում նուագի 'ի հիմանց զմենարանն իմ շարժեցին ։ և ես անշարժելի մտօք առ նա կարդայի ։ Բազում անգամ դղրդիւնս յարուցանէին , տեղապ կաքաւս կաքաւէին , և շատ եւս շչէին և ձիչս բառնային ։ այլ 'ի սաղմոսել իմում՝ աղաղակեն նոցա 'ի ձայն ողբոց դառ-

Հաւատայք արդեօք՝ որդեակք, և զոր ասելոցս եմ ձեզ ։ Տեսի երբեմն զսատանայ վիթխարի մարմնով. որ յանդգնեցաւ անուանել զանձն՝ զօրութիւն և տեսչութիւնդ. և ասէ ցիս. Ո՜ ինչ կամիս յինէն Անտոնիէ, զի տաց քեզ ։ Այլ ես թքի ընդ երեսն նորա, և ողջոյն զանձն իմ կնքեալ փառեցի անուամբն Քրիստոսի ։ Եւ նոյնժամայն անհետ եղև սոսկավիթխար տեսիլն ահաւորին ։ Եւ 'ի պահել իմում երևեցաւ ինձ իբրև զմիայնակեաց զոմն. և մատուցեալ առ իս հաց, ամօքէր ուտել, և փոքր մի թոյլ առնել տկար մարմնոյս, բանիւքս այսօրիւք. և դու ինքն՝ ասէ, մարդ ես, և մարդկային տկարութեան զգածեալ. մեղմացո՛ սակաւիկ ինչ զաշխատութիւնդ, զի մի՛ հիւանդութիւն 'ի վերայ հասանիցէ ։ Անդէն և անդ ծանեայ զչարադէմ տեսիլ խորամանկ օձին. և իբրև այն ինչ դիմեալ ապաւինեցայ յամուր ապաստանի իմոյ՝ որ 'ի Քրիստոս, ընդ նմանութեան ծխոյ ընդ պատուհանն արտաքս ելեալ՝ ցնդեցաւ ։ Դարձեալ և լարս ձգէր ինձ ոսկւոյ բազում անգամ յանապատի, զի կամ տեսութեամբ նորին թակարդիցէ զիս, և կամ հուպ լինելով պղծեսցէ ։ Եւ յայսր ամի վերայ բազում անգամ ես ձաղկեցայ յայսոց չարաց. այլ ես զայն յեղանակէի. * Ո՞վ մեկնեսցէ զիս 'ի սիրոյն Քրիստոսի ||։ Եւ իբրև լսէին զայս դևքն՝ զմիմեամբք ելեալ զայրագին մոլեգնութեամբ 'ի բաց հալածէին, ոչ ինև, այլ հրամանաւ տեառն, որ ասէ. * Տեսանէի զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն ||։

Արդ՝ որդեակք, զայս ամ ըն առաքելոյն բանի՝ յանձն իմ առակեցի. զի զձեզ՝ 'ի յա-ռաջեդել նպատակէ ոչ այսոց երկիւղ, և ոչ այլ ինչ մեղկուն դրդուեսցէ:

Այլ զի վասն ձերոյ օգտի բազում ինչ 'ի յայտնուն բերելն եղէ իբրև անզգամ, կա-միմ և զայս ինչ մանաւորել ձեզ. և մի՛ ոք յերկբայս լիցի 'ի լսողացդ, զի ճշմարիտ է: Նստեալ էի երբեմն դեռ զդրան մենարանի իմոյ. և եկն տեսի այր մի ահագին և ան-հեթեթ բարձրութ հասակի, որոյ գլուխն հասանէր մինչև յերկինս: Նա իբրև հարցի ցնա, թէ դու ո ես. ասէ, ես եմ սատանայ: Իսկ ես ասեմ ցնա. և զինչ խնդրես դու աստ: Նա պատասխանի ետ և ասէ. զի՞ է՝ զի 'ի զուր տարապարտուց թշնամանեն և մեղա-դիր ինձ լինին միայնակեացք, և ըէր ազգք ամ քրիստոնէից անէծս ինձ կարդան: Իսկ ես ասեմ. և կարի իսկ յիրաւունս գործեն զայդ. զի յերեսաց խարդախութեց քոց ստէպ նեղին չարաչար: Իսկ նա ասէ. ես և ոչ մի ինչ առնեմ. այլ նք անձամբ զանձինս խռովեն. քանզի ես նկուն եղէ և թշուառացայ յոյժ: Ոչ իցէ քո ընթերցեալ. * զի պակասեցան թշնամւոյն զէնք մինչև իսպառ, և զքաղաքս նց աւերեցեր ||: Արդ՝ ահաւադիկ չիք այլ ևս ինձ ուրեք տեղի, և ոչ քաղաք ինչ բնակութե. և չիք իմ զէնք այսուհետև. զի ամենեքեան քոյ մեծամեծայն պատմի ը ամ ազգս և ծս: Աւանիկ և անապատք անգամ փա-կուք կրօնաւորաց լցան: Ա՛զէ ինքեանք ան-ձանց իւրեանց զգուշասցին, և մի՛ վայրա-

պար

պար զիս դատափետ առնիցեն ։ Յայնժամ սքանչացեալ իմ զուարթութ̃բ մեծաւ ը̃ շը– նորհսն ա̃յ, խօսեցայ առ նա այսպ̃ ։ Օ այդ– քան հաւաստի՝ թէպէտև նոր և անլուր, ո՛չ 'ի քումմէ ճշմարտութ̃է բարբառեցար , որ գտանի 'ի քեզ և ոչ մի ։ քանզի՝ որ առաջ– նորդդ ես ստուե̃ և գլուխ ա̃մ խաբէուե̃ց , զայդ մի ինչ առանց ստուե̃ բռնադատեցար խոստովան լինիլ ։ Օ 'ի արդարև իսպառ ու– նայնացոյց յա̃ զզօրութիս քո ։ և դու մերկացեալ 'ի հրեշտակական պատուոյ՝ ընդ տիղմն թա– ւալիս ։ Եւ մինչդեռ բանք իմ 'ի բերանի ի– մում էին , և ահա 'ի բաց հալածեցաւ յա– նուանէ փրկչին ահագինն այն ցնորք յաղ– թամարին ։

## Գլուխ ։ Ժ ։

Յորդոր քաջալերութե̃ անուանի առ ուսանողսն ։ և պարտաւոր խրատատուաց նց ։

Արդ զի՞նչ կասկած այսուհետև որդեակք տեղի ունիցի 'ի մեզ ։ Ո՞ր երկիւղ և դողումն սրտի կայցէ այլևս ։ Ո՞ր աղմուկ չա– րաց նա̃յ կարասցէ զմեզ դրդուեցուցանել ։ Հանդարտեսցի՞ն սիրտք իւրաքանչիւր 'ի ձեզ ։ մի՛ ումեք լիցի վարանիլ 'ի խորհուրդս սնոտի արկածիւք ։ մի՛ ոք զանգիտեսցէ 'ի սատանայէ՝ ոչ թէ 'ի ձեռնին նր̃ իցէ չէ՞ր խարդաւա– նել զոք 'ի խորխորատ ։ Այլ բայց լիցի ա̃մ կարծ– մրտութի ։ Վանզի ինքնին տ̃րն , որ խորտա– կեաց զթշնամիս մեր առաջի մեր , մնալով ը̃ մեզ՝

գիտեսցէ, այլ առաւել զհետ մտեղ հալա-
ծականս արասցէ զհակառակորդս: Քանզի
չէ ինչ անտեղեակ սատանայ հանդերձեալ
հրոյն. և իրազեկ է տապոյն սաստկութեան գե-
հեննոյն բորբոքելոյ:

Որդ՝ ՚ի կնքել զբանս՝ ՚ի լրումն տմի յուշ
առնեմ և զայս: Յորժամ տեսիլ ինչ ձեզ
յանդիման երևեսցի, հարցջիք համարձակ,
թէ ո՞ է, և կամ ուստի՞ գայ. և նոյնժամայն՝
եթէ ՚ի քէն իցէ յայտնութիւն, հրեշտակական
մխիթարութեամբ երկիւղն դարձցի յուրախութիւն.
իսկ եթէ առ ՚ի դիւէն իցէ փորձութիւն, հաւա-
տարիմ հոգւոյն հարցափորձիւ անդէն ու-
նայնասցի. քանզի նշան մեծ է աներկեւա-
նութեան՝ հարցանել՝ թէ ո՞ ոք է, և ուստի՞: Այն-
օրինակ՝ և որդին Նաւեայ հարցաքննեալ
ծանեաւ զնիզակակից իւր զվերինն: Եւ ՚ի
դանիէլի հարցանելն՝ ինքնին ՚ի վեր ել չա-
րին խարդախութիւն:

Եւ իբրև վախճանեաց անտոն զբանս իւր,
լցան ամենեքին՝ որ անդն կային, զուարթութեամբ,
և ահա ամն ՚ի ցանկութիւն առաքինութեանց բոր-
բոքէր, և ոմն զօրացեալ ՚ի կորեալ հաւատս
հաստատէր. կէսք ՚ի մտաց զկարծիս սուտ
՚ի բաց մերժէին, և այլք զտագնապ մնոտի
երկիւղին յանձանց փարատէին: Եւ առ-
հասարակ ամենեքին առ ոչինչ համարեալ
այնուհետև զդաւաճանութիւն դիւաց՝ զար-
մանային ընդ մեծութիւն շնորհացն անտոնի յըն-
տրելն զօդիս, զոր ընկալեալ էր նա ՚ի տու-
չութէ պարգևաց տն:

Որդ՝ էին ՚ի լերին անդ միայնարանք իբրև

զխո-

զխորանս տաղաւարաց՝ լցեալք աստուածահոյլ պարուք սաղմոսողաց, ընթերցողաց, և աղօթողաց։ Նա և այնչափ ինչ եռանդն պահոց և ողջնութեանց արկեալ էր 'ի սիրտս ամենեցուն քահանայից նորա, մինչև 'ի սէր համբերձել յուսոյն՝ անձանձրոյթ փութով ջանիւ 'ի սէրն՝ որ առ միմեանս, և յողորմութիւն առ կարօտեալս. և էր տեսանել զնա՝ իբրև բնակեալ յԵրուսաղէմ արձակատարած աշխարհ ինչ և 'ի քաղաք՝ մեկնեալ յամ աշխարհական կարգաց, և ամ աստուածպաշտութեամբ և արդարութեամբ զարդարեալ։ Ով ոք 'ի տեսանել անդ զայն բանակ միայնակեցաց, կամ 'ի հայիլն ընդ քաղաքէն խուռն միաբանութեանց. յորում Քրիստոսակար և ոչ մի, և ոչ բամբասանք առն բանսարկուի, այլ բազմութիւն պահեցողաց ժուժկալութեան, և այր զարամբ ելեալ 'ի գեղեցիկ պաշտամանն, ոչ անդէն առ նմին ձայն բարձեալ աղաղակէր. * Իբրև զի գեղեցիկ են տունք քո յակոբ, և խորանք քո իսրայէլ, իբրև զանտառս հովանաւորս, և իբրև զբուրաստանս առ գետովք. իբրև զխորանս՝ զորս կանգնեաց Տէր, և իբրև զմայրս 'ի ջրնացս ջուրց ‼. (Թուոց. ԻԴ)։

Այսոցիկ այսպէս եղելոյ՝ որով և օր քան զօր աճէր փոյթ երանելի կենաց յամենեսեան, զմտաւ ածեալ անտանելի զոր 'ի յերկինս զօթևանացն պատրաստութիւն, և արհամարհեալ զունայնութիւն սոսկ կենացս, որպէս այն թէ սակաւ իցեն՝ զոր ինչ միանգամ ցայն վայր արարեալ էր նորա, մեկուսի յեղբարց ձգնէր՝ նստեալ 'ի հանդարտութեան։ Նա և յորժամ հարկեցուցանէին զնա կարիք բնութեան՝ առնուլ կերակուր,
կամ

կի՛մ տալ քնով հանգիստ մարմնոյն, կի՛մ զայլ պէտս բնութեն չառնել անտես, ըմբռնել լինէր յամօթ մեծ. իբրև զի ընդ դուզնաքեայ մարմնոյն սահմանաւ կապել կայ տէրական ազատութեան հոգւոյն ։ Մյ և բազում անգամ՝ ՚ի բազմիլ ընդ եղբարս, իբրև ՚ի զարմացման եղել յառաջեդել կերակրոյ անտի՝ յիշատակաւ հոգևոր կերակրոյն՝ ՚ի բաց հրաժարէր ։ Այլ ընդ ժամուն պիտոյից ճաշակէր ոչ զմարդ՝ երբեմն առանձինն, և երբեմն ընդ եղբարս ։ Եւ իբրև զայսօրինակ վարէր ըստ նախասացել գեղեցիկ կարգաց, խրատէր զեղբարս, եթէ չափով ևեթ պարտ է հոգալ զմարմինն՝ միշտ զհոգին առաւել խնամելով. քանզի ասէ, և ոչ զմարմինն պարտ է գլխովին տկարացուցանել, և ոչ զգործն այս քակել ընդդէմ կամաց արարչին ։ Եւ վասն այսորիկ զամենայն փոյթ պարտ է ՚ի մէջ առնուլ հոգւոյն, զի մի ՚ի մարմնական կրից յաղթահարեալ մատնեացէ զինքն և զմարմինն ՚ի յաւիտենական խաւարն դժոխոց, այլ առաւել զտուեալն նմա զօրութիւն ՚ի վերայ մարմնոյ պինդ ունելով զսակարանն իւր (զմարմին) ըստ օրինակի առաքելոյն պօղոսի յերրորդ երկինս վերացուսցէ ։

Եւ ասէր, եթէ զայս պատուէր ունիմք ՚ի նմին իսկ ՚ի փրկչէն, որ ասէ. * Մի հոգայք վասն ոգւոց ձերոց, զինչ ուտիցէք, կամ զինչ ըմպիցէք. և մի վասն մարմնոց ձերոց՝ թէ զինչ ագանիցիք. զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ հայրն ձեր երկնաւոր, թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն ։ Այլ խնդրեցէք նախ

զարքայութիւն այ, և զարդարութիւնս. և այդ-
ամն յաւելցի ձեզ ։

## Գլուխ. ԺԸ.

Վասն [illegible] առ նախարարսն. և որոց չէին նորա ։

Իսկ եղև յետ այսց բանից՝ յորժամ հալածանք ամբարիշտ կայսերն մաքսիմիանոսի անհնարին մոլեգնութեամբ վրդովէր զեկեղեցին, և որք մկայքն ածեալ լինէին յաղէքսանդրիա, թողեալ և անտանելի զմենարան իւր՝ չոգաւ զհետ նց, որք քահի հանդերձեալ էին լինել ողջակէզ, ասելով. Ո՛ն եկայք և մեք երթիցուք՝ ի փառաւոր յաղթանակս եղբարց մերոց. զի կամ և մեք հանդիսակից լիցուք նահատակութե նց, և կամ տեսցուք զհանդէսն քաջութե նոցին։ Իսկ թէպէտ սիրոյ մնացականքն յանձին կրէր զկատարեալ մարտիրոսութի, այլ քանզի չկարէր անձամբ զանձն մատնել և լինել կցորդ խոստովանող մկայից, որ էին ՚ի մետաղս, կամ ՚ի բանտս, բազում համբերածակութե և փութով քաջալերէր՝ զդատապարտեալսն մնացանելին, զի մի յերկիւղէ ամբարշտացն զարհուրեալ ուրասցին զՔն ։ Իսկ ընդ այնոսիկ՝ որք մխանդամ մկայականն պսակն արժանացեալ, զդատապարտեալսն միահամ վաունէին, մեծամեծս խնդակցեալ, ոչ թէ բնքն քանզի էր՝ որ զյաղթութիւն առար, երթայր զհետ մեծաւ ցանկալի հեղման ըստ արեան նց ։

Այլ բարկացեալ դատաւորին ընդ անօրէնքն զ-

հա

համարձակութիւն անտոնի և ընկերացն որ՝ հրա-
ման եհան, զի մի՛ ոք ամենևին 'ի միայնակե-
ցաց իշխեսցէ մերձ լինել ատենի կմ̃ երևիլ 'ի
քաղաքի ։ Հաճոյ թուեցաւ այլոցն ամենե-
ցուն նոյն օրէն թագչիլ. բայց անտոն ինչ ոչ
զանգիտեաց. և առ ոչինչ համարեալ զհրա-
ման հալածչին, առեալ լուաց զաղաբողոն
իւր ։ Եւ 'ի վաղիւն անդր կացեալ յերևելի
տեղւոջ՝ արկեալ զիւրև զզգեստն պայծառ,
հնարէր յինքն ձգել զաչս դատաւորին՝ որ
ը̃ այն անցանէր, առ սաստիկ տենչանացն նա-
հատակութ̃. յայտ արարեալ՝ թէ 'ի սիրտ քրիս
տոնէի այնպ̃ պարտի զօրանալ արհամարհութ̃
տանջանաց և մահու, մինչև տրտմիլ իսկ՝ ե-
թէ 'ի ցանկալն չարչարիլ վս̃ անուանն տ̃ն՝
վրիպեսցի 'ի մարտիրոսութ̃է ։ Բայց ա̃ծ՝ որ
պատրաստէր հօտի իւրում ուսուցիչ իմաս-
տուն, պահեաց զանտոն. զի կարգ միանձ-
նութ̃ հաստատեսցի՝ եթէ բանիւք և եթէ
օրինակաւ վարուց իւրոց. որպ̃ և եղեն իսկ ։
Սակայն նա ոչ երբէք մեկնեցաւ 'ի հետոց
ո̃րց խոստովանողացն. այլ ևս քան զևս կա-
պեալ հոգւով ը̃ նս̃՝ 'ի ձեռն սաստիկ խնա-
մոց և անձուկ սիրոյն, առաւել բանտարգե-
լութ̃ յանձին կրէր քան զնս̃, զի չեղև ար-
ժանի կցորդ լինել կապանացն նց̃ ։
Եւ եղև՝ իբրև դիջաւ խռովութ̃ հալածա-
նացն, 'ի ժամին՝ յորում պսակեցաւ յաղթա-
նակ մարտիրոսութ̃ երանելի եպ̃կն պետրոս,
այնուհետև դարձ արարեալ անտոնի յա-
ռաջին իւր վանսն, զհանապազորդ նահատա-
կութ̃ 'ի հանդէս հաւատոց և մաքուր մտաց

յան-

յանձին ը̃ունէր , առ̂եալ զանձն յևս խըս-
տամբեր ձգունս պահոց և տքնութեց : Ներ-
քոյ խարազն զգենոյր , և արտաքոյ հանդերձ
մաշկեղէն . ոչ երբէք լուանայր զմարմինն ,
և ոչ զաղտս յոտիցն մաքրէր . բայց միայն
յորժամ հարկ 'ի վ̃ր հասանէր անցանել ը̃
ջուր : Այլ և ոչ ոք ետես երբէք զմարմինն
անտանի մերկ 'ի կենդանութե̃ նորա :

Պէպ եղև յաւուր միում, զի յորժամ հեռա-
ցեալ էր անտոն յաչաց ամենեցուն , և փա-
կեալ զմենարանն՝ ոչ զոք բնաւ ը̃ունէր , եկն
եհաս մարտինիանոս զօրագլուխն , որոյ
դուստր չարաչար լլկէր յայսոյն պղծոյ . և
բաղխեալ զդուռն՝ աղաչէր զանտոն հասա-
նել յօգնութի̃ տառապանաց իւրոց . Ելցես
(ասէ) արտաքս , և աղաչեսցես զՏ̃ր վ̃ն դըս-
տերն իմոյ : Բայց նա չէառ յանձն բանալ
զդուռն . այլ 'ի վերուստ կարկառեալ՝ ասէ
ցնա . Ա՛յր դու՝ զի՞ յինէն խնդրես օգնութի̃ .
զի և ես ինքն մարդ եմ մահկանացու , և
քումդ կցորդ տկարութե̃ . այլ եթէ հաւա-
տաս 'ի Ք̃ս՝ զոր պաշտեմս , երթ , և ը̃ հաւա-
տոց քոց աղաչեա՛ զԱ̃ծ . և բժշկեսցի դուստր
քո : Եւ նորա վաղվաղակի հաւատացեալ՝
գնաց . և ը̃ կարդալն զանունն Ք̃ի՝ ողջան-
դամ դարձոյց զդուստր իւր : Բազում և
այլ սքանչելիս արար Տ̃ր 'ի ձեռն ն̃ր . և յի-
բաւի, զի որ խոստացաւն յաւետարանի՝ եթէ
* խնդրեցէք , և տացի ձեզ ||, գտեալ զար-
ժանին շնորհաց իւրոց՝ ոչ ամփոփեաց զզօ-
րութի̃ս իւր 'ի նմանէ . քանզի բազմութի̃ք ախ-
տաժետաց՝ որք առ այնի փակե̃ դրաց ն̃ր ան-

կեալ գնէին, նր հաւատարիմ հայցուածովք
առ քն բժշկեալ լինէին ։

## Գլուխ. ԺԸ ։

Մինչ անկանի անձամբ 'ի ներքին անապատ . և
հրաժարելն՝ որք անդէն ընդ նմա անդ ։

Բայց այս բազմութիւն եկելոց՝ քանզի
խափան լինէին ցանկալի առանձնութե-
նն, ձանձրացուցանէին զնա յոյժ ։ Նա որոյ՝
երկուցեալ, թէ գուցէ բերում շնորհքն օքան-
չելեաց բարձրացուցանեն զմիտս նր, կմ գու-
ցէ ոք ոչ որ համարիցի ինչ աւելի քն նր,
քան զոր տեսանիցէ 'ի նմա, խորհեցաւ եր-
թալ 'ի վերին թեբայիդ, ուր ոչ ոք զնա ճա-
նաչիցէ ասէ ։ Իբրև առեալ հաց յեղբարց՝ նըս-
տէր յեզր գետոյն ; և մնայր նաւու ինչ անց-
ցանելոյ ։ Մինչդեռ նա զայս խորհէր, ձայն
եղև առ նա 'ի վերուստ, որ ասէր . Անտո-
նիէ՝ յո՞ երթաս, և վն էր ։ Իսկ նա աներ-
կիւղ՝ իբրև ծանօթ բարբառոյն՝ որ խօսէր
առ նա, ետ պատասխանի, և ասէ . Ոչ ի ոչ
թողու զիս ժողովուրդն հանդարտիլ՝ վնյ
լաւ համարեցայ երթալ 'ի վերինն թեբայիդ .
մանաւանդ զի խնդրեն մարդիկ զայն ինչ,
որ զանցանէ զզօրութի տկարութե անձինս ։ Իսկ
ասէ ցնա ձայնն . եթէ 'ի թեբայիդ գնաս,
եւ 'ի հանգրուանս արօտականաց, որպէս խոր-
հիս երթալ, կրկին և առաւել նեղութիւն
ունիցիս . այլ եթէ ստուգիւ ցանկաս հան-
դարտիլ, երթ մտեր 'ի ներքին անապատ ։

Իսկ յասել Անտոնի, ո՞ ցուցցէ ինձ զայն
անկոխ տեղի, քանզի անտեղեակ եմ ես վայ-
րացն. վաղվաղակի եցոյց նմա որ խօսէրն՝
զանցաւորս 'ի սարակինոսաց, որք յաղագս
վաճառականութե՟ ստէպ գային յեգիպտոս:
'Ի նս՟ա յարեցաւ Անտոն, և աղաչէր ը՟ունիլ
զինքն՝ և տանել յանապատն 'ի միասին: Իսկ
ոչոք ը՟դդէմ եկաց, այլ իբրև յԱ՟յ առաքեալ՝
ընկալան զնա յուղեկցութի՟: Իսկ ճ՟պհ արա-
րեալ զերիս տիւս և զերիս գիշերս՝ եգիտ
լեառն բարձր յոյժ. յորոյ ստորոտէ խաղայր
աղբիւր քաղցրահամ ջրոյ. և էր զլերամբն
շուրջ պատեալ դաշտավայր փոքր. և ար-
մաւենիք 'ի նմա՝ թուով սակաւ, և ան-
խնամ 'ի մշականէ: Զայս տեղի՝ որպ՟ յԱ՟յ պատ-
րաստեալ նմա՝ գիտեաց Անտոն: Քանզի
այն իսկ էր, զոր եցոյց նմա, որ խօսէրն,
մինչ էր նա նստեալ յեզր գետոյն: Իսկ նախ
զառաջինն առեալ հաց յուղեկցաց անտի՝
ինքն միայն մնաց 'ի լերինն, ոչ զոք ունելով
ը՟ իւր ընկեր: Զի իբրև իւր սեպհական
տուն համարէր զայն տեղին: Տեսանելով և
սարակինոսաց զխստաճութի սրտի նր՟, յանցա-
նելն առ նովաւ՝ ուրախութ՟ հաց բերէին նմա.
Նաև յարմաւոյ տեղւոյն ունէր ինչ մխիթա-
րութի. թէպէտև սակաւ:

Ապա ծանուցեալ եղբարց զտեղին զայն,
փութացան իբրև որդիք մեծաւ խնամով
առաքել հօր իւրեանց կերակուր: Տեսեալ
Անտոնի՝ եթէ վ՟ն իւրոյ պիտոյից՝ բազմաց
աշխատութի մեծ հասանէ, խնայելով և
յայսմ 'ի կրօնաւորսն, աղաչեաց զոմն յե-
կե-

կեղոցն բերել նմա բրիչ և բահ և ցորեան սակաւ ։ Նա իբրև բերին՝ շուրջ հայեցեալ զլերամբ՝ եգիտ տեղի մի փոքրիկ յարմար 'ի գործել, զոր և ոռոգանէր ջուրն իջեալ 'ի վերուստ. և յայնմ տեղւոջ սերմանեաց ։ Նա զամի ամի հաց իւր գործելով հանէր անտի, և ուրախ լինէր, զի առանց աշխատ առնելոյ զոք՝ 'ի ձեռագործէ անտի իւրմէ կերակրիւր յանապատին ։ Բայց իբրև միւսանգամ սկսան և անդր գալ ոմանք, գթացաւ յաշխատութի նց, և 'ի միում վայրի գետնոյ տնկեաց պարտէզ բանջարոյ. զի որք գային առ նա՝ հատանելով զայն ուղի դժուարին, գտցեն ինչ մխիթարութի ։ Ոչ այս մխիթարութի եղբարց, և զսակաւիկ հունձսն անտոնի ձարակեցին գզ̃նքն, որք վ̃ն ջրոյ գային անդր ։ Յորոց կալեալ ոմին՝ ասէ ցնոսա. Ընդէր առնէք զայդ ը̃ իս, որ ոչինչ վնաս արարի ը̃ ձեզ ։ Ի բաց գնացէք, և յանուն տ̃ն՝ մի՛ ևս այսր հուպ լինիցիք ։ Ո՜վ սքանչելեացս. զի յետ այսր հրամանի սորին՝ իբրև յահի մեծի լեալ գազանացն ոչ ևս յաւելին երբէք մերձենալ յայն տեղի ։

Արդ՝ իբրև ը̃ այսմ օրինակի հանդարտեաց անտոն 'ի փապարս լերանց, և 'ի խորին վայրս անապատին՝ անդադար յաղօթս պարապեալ, եկեալ առ նա եղբարց՝ բազում աղաչանօք հազիւ հաւանեցուցին զնա՝ զի հաճեսցի առնուլ ձիթապտուղ և ունդ և ձէթ, որք ամսօրեայ ծմկի զպէտսն լնուին. և փոքր մի զխուրութի արտաքսէ ծերութեն ։ Նա ո՞ կարէ ասել թէ քանի՛ պտրզմանց տա-



րաւ

րաւ 'ի բնակութ՟ն անդ իւրում. քանզի որ-
դարև՝ ը՟ն գրեցելումն, * Ո՛չ էր նմա պատե-
րազմ ը՟ն մարմնոյ և ը՟ն արեան, այլ ը՟ն իշխա-
նութիս և ընդ պետութիս ‖. ո՞րպ 'ի նոցունց ան-
տի՝ որք ստէպ գնայինն առ նա՝ տեղեկացեալ
ծանեաք: Քանզի պատմէին, եթէ մեք մե-
զէն տեսանէաք զաղմուկն՝ և զաղաղակ ամ-
բոխին, և զշառաչիւն զինուցն, և զլեառն
գլխովին ծածկեալ 'ի բազմութ՟ն դիւաց, և
զանտառն՝ զի կայր յայտնապ՟ իբրև ախոյեան
անվանելի ը՟ն դէմ թշնամեացն, և մենամար-
տէր քաջութ՟բ: Որ և զեկեալն առ ինքն քա-
ջալերէր յորդորմամբ. և ծնրադրութ՟բք և
աղօթիւքն զինուք զբովանդակ բանակս դի-
ւաց վանէր զգետնէր: Ապաքէն սքանչելի
է յոյժ, զի յահագին անապատի անդ այր
ոք առանձին՝ ոչ 'ի համապազորդ յարձակ-
մանց այսոց երկնչէր, և ոչ 'ի բազմապա-
տիկ գազանութ՟ն ազգի ազգի անասնոց վայրի
և չորքոտանեաց կմ՟ զեռնոց զանգիտէր:
Յիրաւի ապա երգէ մարգարէն դաւիթ.
* Որ յուսայ 'ի տ՟ր, ո՞րպ լեառն սիոն՝ մի՛ սա-
սանեսցի յաւիտեան ‖: Քանզի անսասան և
անվրդով պահելով յա՟մի զհաստատութի սըր-
տին՝ և զդևս հալածէր, և զգազանս վայրե-
նիս՝ ըստ գրոյն ը՟ն իւր խաղաղացուցանէր:
Նա և ո՞րպ բանսարկուն՝ ը՟ն վկայելոյ նորին մար-
գարէի, սպառէր նմա, և կրճտէր զատա-
մունս իւր. նոյնպ՟ և նա օգնականութ՟բ փրկ-
չին յամ՟ հնարից խաբէութ՟ն նր՟ կայր մնայր
անվտանգ:
Ապա 'ի գիշերի միում, յորժամ անտառն

զուար-

զօրութք հսկէր յաղօթս տն, զայնչափ
բազմութի անասնոց վայրի կուտեաց դեւն 'ի
վանս նր, մինչեւ տեսանել անտոնի զիւրեւ
զամ գազանս անապատին: Իսկ իբրեւ առ
հնրկ ահագին բերանաբացութք սպառնային
խածանել զնա՝ ծանեաւ անդէն զխորաման
կուխս թշնամւոյն, եւ ասէ. Եթէ տուեալ է
ձեզ 'ի տնէ իշխանութի 'ի վր իմ, պատա
ռեցէք զիս: ապա թէ վարեալք 'ի դիւաց
գումարեցայք այսր, երթայք վաղվաղակի 'ի
բաց, զի ես ծառայ քի եմ: Իսկ եղեւ այնկ.
զի զոյգ ը ձայնին հրամանաց նր՝ բազմութի
գազանացն՝ որպ հարուածեալք դաւազանաւ
բարձրելոյն 'ի բաց հալածեցան:

Յետ այսորիկ մինչչեւ էին անցեալ աւուրք
բազում, մի եւս պատերազմ յարոյց թշնա
մին ընդ նմա: Մինչդեռ նստէր նա 'ի ձեռա
գործս, (քանզի անձանձրոյթ աշխատէր առ
'ի տալ ինչ փոխարէնս նց, որք բերէին ինչ
նմ.) քարշեաց տն զսիրտն ձեռագործին,
կմ զչուանն սփրթին՝ զոր հիւսէր: Իսկ յա
րուցեալ 'ի շարժմանէ գնտի՝ ետես, եւ ահա
գազան՝ մարդակերպ մինչ մէջք չափ 'ի վեր, եւ
'ի միջոյ 'ի վայր իշաձեւ: Նա որ հայեցեալ
կնքեաց նշանաւ խաչին զդէմս իւր, եւ զայս
բան եւեթ ասաց. ծառայ քի եմ, եթէ առ
իս առաքեցար, ոչ փախչիմ: Իսկ ահա ան
դէն վաղվաղակի հրէշն այն այլանդակ՝ շտապ
քան զասելն փախստական եղեւ իբրեւ խուռն
բազմութք արբանեկաց իւրոց: Իսկ յընթացս
սատակումն կործանեալ անյայտ եղեւ: Նա յա
կորուստ հալածական եւ սատակամահ հրէ

չիցս՝ ամ̃ զինուց էր խորտակումն առ հասա-
րակ, այն՝ որ ամ̃ հնարիւք ջանացեալ ոչ կա-
րացին հանել զանտոն յանապատէ անտի ։
Իսկ զհետ սքանչելեացս և եւս սքանչելի
անցք անցին ։

## Գլուխ․ ԺԳ․

Յայց ելանել Անտոնէ յանապատէն Անտոնիոսի, և հաս-
տատել զնա ։

Յետ ոչ բազում ժամանակաց 'ի վ(երա)յ անցանե-
լոյ՝ այնպիսի այր անյաղթելի յաղթեալ
եղև յաղաչանաց եղբարցն ։ Քանզի յաղա-
չել զնա յոյժ միայնակեցաց՝ երթալ 'ի տես-
նչ, գնաց ընդ նոսա, բարձեալ 'ի վ(երայ) ուղտու
զջուրն և զհացն․ քանզի ոչ ուրեք՝ բաց 'ի վա-
նացն, ուստի առեալ էր նոցա, գտանէր ջուր
ըմպելոյ՝ ընդ անջրդի ճանապարհն ։ Իսկ
իբրև հասին 'ի կէս ճանապարհին, սպառ-
եաց նոցա ջուր ըմպելոյ ։ Եւ առ սաստիկ տա-
պոյն, և անբերելի տօթոյն տեսանէին ըզ-
մահ առաջի աչաց ։ Շրջէին այսր և անդր,
և խնդրէին գէթ լճակ ինչ անձրևոյ, և ոչ
գտանէին ամենևին ուստեք զդեղ և զդար-
ման կենաց․ թողուն և զուղտն 'ի բաց իբրև
չնչասպառ․ և ինքեանք կային 'ի վաքանս՝ տա-
պացեալ և կթուցեալ 'ի պապակոյ ծարաւոյն ։
Ի գութ շարժեցաւ ծերն 'ի վ(երայ) հառաչա-
կաց վտանգի եղբարցն, և սաստիկ կարեկցու-
թ(եա)ն նոցա յոգւոյ եհան ։ Ապա 'ի սովորական
աղօթիցն հնարս ապաստան եղեալ մեկնե-
ցաւ

ցաւ փոքր մի 'ի նոցանէ, և ծունր եդեալ ան-
դէն՝ տարածեաց զաղօթանուէր ձեռս իւր
առ Տէր։ Եւ նոյնժամայն՝ ընդ առաջին կա-
թիլս արտասուացն, 'ի տեղւոջն՝ յորում ա-
ղօթէր, պղպջակեալ 'ի վեր բղխեաց աղբիւր
ջրոյ. և յայնմ վայրի շիջուցեալ զծարաւն՝ զո-
վացուցին զանձինս իւրեանց, և զօրացան.
լցին և զտիկսն, և ուղտուն ևս դատելոյ՝ ար-
բուցին ջուր. զի 'ի թափառել ուղտուն ընդ
անապատն, փոկն՝ զոր զհետ իւր ձգէր, ար-
գելեալ կառեաւ ընդ վէմ մի։

Ապա՝ դարձեալ յուղի անկեալ՝ եհաս առ կրօ-
նաւորսն, որոց կոչեալ էր զնա։ Յայնժամ
ամենեքին ընդ առաջ ելին նր իբրև հօր իւ-
րեանց, և ընթացեալ միաբան յողջոյն մեծա-
րանաց և 'ի համբոյր նր՝ միզմիով ելանէին
դէրկս արկանել նմա։ Ուրախ եղև անտոն ը̃
եռանդն յառաջադիմութէ նց. և 'ի խնդալ ա-
մենեցուն ը̃ դարձուստ նր իբրև ընծայա-
բեր եղեալ նց 'ի լեռնէն՝ զհոգևորսն բաշ-
խէր նց կերակուր։ Գովէր զփոյթ առաջ-
նոցն, և զյետինսն յորդորէր 'ի նոյն։ Տե-
սեալ և զքոյրն կուսան հասեալ 'ի ծերութի,
և ուսուցիչ լեալ իբրև մայր այլոց հաւատա-
ւորաց, ցնծայր անպատմելի խնդութբ։ Յետ
այսորիկ՝ ոչ թէ ընդ երկար եղև 'ի բացեայ
յանապատէն, դարձեալ փութացեալ դիմեաց
'ի լեառն։

Եւ իբրև բազումք գային առ նա, մինչև դի-
ւահարաց անգամ՝ ստիպեալ 'ի բռնութէ ախ-
տից՝ համարձակիլ մերձիլ յանապատ անդր,
ինքեանն մխիթարէր զնս. և հերկաց պատուէր

 տուեալ

տուեր առ միայնակեացս, ասէր։ Հաւատա-ցէք 'ի յՅսն Քսն ճշմարտութբ. սրբ պահեցէք զմիտս 'ի չար խորհրդոց՝ և զմարմինս 'ի պղծութեց. և ըստ ածային պատգամաց, * Մի՛ խաբիք լրութբ որովայնի ‖։ Հեռացէք զփառս մնոտիս. աղօթից սթէպ կացէք, սաղմոս ասացէք յե-րեկոյն, և 'ի փաղորդայն, և 'ի հասարակ ա-ւուր, և որոճեցէք զպատուիրանս ածայինս գրոց։ Զգեցէք զգործս՝ զոր միանգամ գոր-ծեցին սրբքն ածմ. զի յիշատակ արժանակի նոցա յա-ւորէ զհոգին յառաքինութիւն, և յետս ընկրկէ 'ի մեղուեց։

Պարձեր յորդորէր յարատեւամ խոնկմամբ պա-հել զբանն առաքելոյն, որ ասէ. * Արեգակն 'ի վր բարկութե ձերոյ մի մտցէ ‖։ Նա 'ի վր բերէր զմեկնութն, թէ ոչ լոկ 'ի վր բարկու-թե չէ պարտ մտանել արեգական; այլ և 'ի վր ո և իցէ յանցանաց մարդկան. զի մի եր-բեք մեղաց մերոց կամ ընտանին 'ի գիշերի, և կամ արեգակն 'ի տուէ, մինչ լիցին 'ի մեկ-նիլ խուրեանց։

Նա և խրատէր յիշել զնորանն պատուիրեր՝ որ մն սաղին իւրաց * Քննեցէք զանձինս ձեր՝ և փորձեցէք ‖. զի 'ի համար բերելով զգործ-սունջեան և զգիշերոյ, եթէ գտցեն յան-ձինս զյանցանս ինչ՝ դադարեսցին 'ի մեղաց անտի. ապա եթէ չիցեն ներքոյ անկեալ և ոչ մի ինչ պատրանաց, 'ի նոյն համապաղորդել կայցեն՝ յոր սկսանն. և մի՛ իւիք հպարտա-ցեն յանձինս՝ կամ զայլս արհամարհեսցեն, և կամ յանձինս գրաւեսցեն զարդարութեն տուեան. Զի ասելոյ նորին վարդապետի, եթէ

թէ * մի՛ յառաջ քան զժամանակն դատիք‖. այլ պարտ է թողուլ զա̃մ ք̃ի դատողութեն, որում ամենեքեան յայտնի են ա̃մ գաղտնիք ։ * Ո՛ւ_ ղղուած ճանապարհք են՝ (ՌԾ գրոցն), որք թուին յաչս մարդկան, թէ ուղիղ իցեն, բայց կա_ տարած նոցա հայի յատակս դժոխոց‖ ։ Ի՛նչ այն է՝ զի զմեր յանցանս իսկ չեմք բաւական առնուլ ՛ի միտ, և ըստ ամ անգամ խաբիմք յըն_ տրութե գործոց. զի այլազգ է դատաստան ամենատեսին նոյ, որ ոչ ըստ արտաքին երե_ ւոյթ, այլ ը̃ս գաղտնեաց մտացն դատի ։ Նա_ պարտ է մեզ՝ միմեանց կարեկից լինել. և * զմիմեանց բեռն բառնալ‖. և այնպէս փրկ_ չին թողեալ զքննութիւն՝ հայեսցուք ՛ի խիղճ մտաց մերոց՝ անձամբք զանձինս դատե_ լով ։

Պ՛արձեալ՝ ասէր. գեղեցիկ ճ̃պհ հորդեր առ առաքինութի, եթէ այր խորաքննչիւր դիտեալ զննէին զոր գործեն, և կամ յայտնէին եղ_ բարց զա̃մ խորհուրդս մտաց ։ Վ՛անզի ոչ ոք իշխէ մեղանչել, երբ ունի պատմել առաջի այլոյ զա̃մ զգործեցեալ մեղսն, և յանձին կրել զամօթն՝ հրապարակեւոյ զգարշելիսն ։ Ա՛պ և ոչ ոք ՛ի յանցուցելոց համարձակի մե_ ղանչել առաջի այլոյ ։ Մ՛ինչև՝ թէպէտև մեղի_ ցէ, սակայն վկայ մեղացն չկամի ունել զոք. այլ յաւէտ սուտ և ուրաստ լինի, և ՛ի վր̃ ա_ ռաջին մեղացն նոր մեղս յաւելու ։ Ա՛պ և մեք մեզէն ամաչեմք աւէ յանձինս մեր, ՛ի խորհելն և ՛ի գործելն, եթէ երբէք արտա_ ցուք՝ զոր ունիմք պատմել. և առաւել ևս՝ ե_ թէ զյանցանս մեր գրելով հաւատարմութե̃

նշա_

նշանակեսցուք կարգաւ. զի 'ի ժամուն նշա-
նագրութ՛ յանցանացն յայտնի լինիցի եղծարց:
Պատկառել զանգիտեսցուք յայնժամ 'ի պի-
տակէն իբր 'ի գիտակէ մեղաց մերոց, և նոյն
իսկ նշանագիրքն յանդիմանեսցեն զմեզ. և
զոր օրինակ՝ որք ընդ պոռնիկս խառնակին՝
զամօթի հարկանին առաջի այլոց, նոյնպէս
և մեք ամաչեսցուք առաջի պիտակին՝ եթէ
զոր անդ գրեալն է արասցուք: Հապա ընդ
այս շաւիղ առաքինութ՛ ընթասցուք, և զմար
մինս՝ մտացն հպատակեալ՝ խորտակեսցուք
զորոգայթադիր հնարս խաբէութեց բան-
սարկուին:





# ԳԼՈՒԽ. ԺԴ.

Պիտանակարաց և անպատճառաց բժշկութե, և յայտնէ ընել անպոյն առ հետևորս։

Այսպիսի յորդոր բանիւք վարէր 'ի փոյթ վաստակոց՝ զորս գայթեն առ նա զմիայնակեացս, և անտակից լինէր ըմբռնե- լոցն 'ի պէսպէս ցաւս կ յայսոց չարաց յորոց և զբազում ազատեաց տր 'ի ձեռն անտոնի։ Սակայն ոչ երբէք եղև նմա սնափառել վն բժշկութե այսպիսեացս, և կամ տրտնջել առ տրտմութեն վն զեռևս ցաւագնելոցն. այլ հա- նապազ միօրինակ կալով՝ սրտին և զխմացն զգոհարթութե՝ շնորհս մատուցանէր տն. և յանձնձէր զվշտագնեալսն՝ համբերութե տա- նել երբև խրատուց իւրաքանչիւր ախտիցն ցաւոց։ Զի ոչ եթէ անտոնի է առն, և կմ այլոյ ուրուք 'ի մարդկանէ՝ դեղ բժշկութեդ, այլ միայն այ, որ ուժև կամի, և յորժամ ա- խորժէ՝ տայ զառողջութի։ Այսպիսի մխիթա- րութեք խրատ տայր նեղելոցն՝ համբերութե տանել փորձութեն, իսկ ազատելոցն ուսուցա- նէր՝ ոչ անձին իւրում, այլ այ տալ զփառս։

Այր ոմն պաղեստինացի՝ փրոնտոն անուն, զոր այս չար անհնարին ըկէր, մինչև տայր զլեզուն ատամամբք ծամել, և ջանայր զաչսն խա-

խնդրեցուցանել, յարուցեալ չոգաւ 'ի լեառն. և աղաչէր զերանելի ծերն աղօթս առնել վ՟ս ն՟ր առ տ՟ր: Ակաց յաղօթս անտոն, և ասէ ցայրն. Երթ՝ և բժշկեսցիս: Նա 'ի թերահաւատիլն նորա, և 'ի պնդագոյնս կալ մնալ անդէն ը՟դդէմ հրամանին՝ զոր էառ, անտոնիոս զնոյն բանս կրկնէր, և ասէր. Դու բժշկել ոչ կարասցես. այլ եկ գնա՛ աստի, և ը՟ կոխել ոտից քոց յեգիպտոս՝ վաղվաղակի հասցէ քեզ ողորմութիւն ք՟սի: Ապա հաւատաց այրն, և գնաց. և ը՟ տեսանելն զեգիպտոս՝ հանգեաւ 'ի ըլկանաց թշնամւոյն, ըստ բանի ծերոյն, զոր յայտնեաց նմա ա՟ծ 'ի կալն ն՟ր յաղօթս:

Դէպ եղև կուսի միում, որ 'ի բուսիրիս քաղաքէ նահանգին տրապօլայ, ախտանալ զախտ ինչ ցաւագին և անլուր. քանզի և ազտ ռնգացն, արտասուք աչացն, և նեխեալ հիւթ ականջացն՝ անկեալ յերկիր՝ իսկ և իսկ յորդունս փոխարկէին: Յաւելոյր 'ի վիշտս ցաւոցն մարմինն հարեալ անդամալուծութ՟, և աչքն թիւրեալք օտար 'ի բնութէ: Զսա առեալ ծնողաց ն՟ր՝ բերին առ կրօնաւորսն, զի գիտացին՝ եթէ երթան առ անտոն. և աղաչէին՝ զի ը՟ իւրեանս տարցին և զտառապեալ դուստր իւրեանց. հաւատալով յա՟ծ, որ զանբժշկելի տեռատեսութ՟ կնոջ՝ ը՟ աւետարանի, մերձենալովն ևեթ 'ի դրօշակ հանդերձին՝ դադարեցոյց: Ն՟ք իբրև չառին յանձն տանիլ զնա ը՟ իւրեանս մինչև յոտս անտոնի, զտեղի առին ծնօղքն ընդ ցաւագնեալ դստեր իւրեանց՝ արտաքոյ լե-

ռին

ընեն՝ առ դուրս երանելոյն պափնոտիոսի խոստովանողի և միայնակեցի, որոյ աչք ք̄զի բրեալ էին վ̄ն ք̄ի առ ժամանակօք հալածանացն մաքսիմիանոսի, վ̄ն այսր արատոյ մարմնոյն մեծապէս փառօք պանծայր։ Արդ՝ իբրև եկին կրօնաւորքն առ անտոն, և այն ինչ կամէին վ̄ն ախտաժետութե̃ աղջկան պատմել նմ̄, յառաջեաց ծերն քան զն̄ս, և զն̄մ բան հիւանդութե̃ նր̄ և ճանապարհորդութե̃ մինչև առ ս̄րն պափնոտիոս՝ պատմեաց մի առ մի, ո՞րպ թէ ինքնին առաջիկայ իւրացն լինելով։ Եւ յաղաչել զնա կրօնաւորաց, զի թոյլ տացէ ծնողացն գալ մտանել առաջի նր̄ ը̄ դստերն իւրեանց, ոչ կամեցաւ. այլ՝ ասէ. երթա՛յք դուք, և թէ չիցէ մեռեալ՝ գտանիցէք զաղջիկն առողջացեալ։ Եւ յաւել ասել. չէ՛ պարտ ումեք գալ առ իմս նուաստութի̃, զի շնորհք բժշկութեց ոչ մ̄դկային գթութե̃ է գործ, այլ՝ մ̄դասէր ողորմութե̃ յն̄ ք̄ի, որ ո̄մ ուրեք 'ի թիկունս հասանէ հաւատացելոց 'ի նա. զոր օրինակ և նա՝ վ̄ն որոյ խնդրէքդ՝ ազատեալ իսկ է իւրովք խնդրուածովք. որ̄պ և ինձ՝ մինչդեռ յաղօթս կայի առ ս̄ր՝ յայտնեաց ցուցաւ առողջութի̃ նր̄։ Ո այս նր̄ ասացեալ՝ զոյգ ընդ բանին և աղջիկն անդէն բժշկեցաւ։ Քանզի ելեալ արտաքս և եկեալ առ երանելին պափնոտիոս՝ գտին զաղջիկն ողջանդամ, և զծնողսն ուրախամիտս։

Իսկ ոչ յետ բազում ինչ աւուրց 'ի գալ եղբարց երկու առ անտոն, պակասեաց նց̄ ջուր 'ի ճանապարհի. և մինն 'ի ծարաւոյ

մեռաւ. իսկ միւսն անկեալ 'ի գետին՝ մերձ էր 'ի մեռանել: Այլ ահա մինչդեռ նստէր անտոն 'ի լերինն՝ կոչեաց վաղվաղակի զերկուս 'ի միայնակեցաց անտի, որք 'ի ժամուն գտան առ նմա. և պատուիրեաց նց փութանակի առնուլ զսափորն ջրոյ, և երթալ ի ճանապարհն, որ հանէ յեգիպտոս. քանզի ասէ՝ միւն յեղբարց, որք գային առ մեզ, այժմ փոխեցաւ առ տր. և թէ ոչ վաղ աճեպարեսջիք՝ և միւսն ընդ հետ նր փոխի. զի 'ի սոյն ժամու՝ մինչդեռ ես յաղօթս կայի, յայտնեցաւ ինձ այս: Զայս իբրև ասաց, ըստ հրամանի նր փութացեալ միայնակեցացն գնացին, և գտին զմիոյ զմեռեալ մարմին, և ամփոփեալ զնա ընդ հողով միւսումն այն պասքելոյ արբուցին ջուր, և առին զնա ի խրբեանս. և էր երկայնութի ճնպհին իբրև գնացս աւուր միոյ: Այլ մի լիցի ումեք արդեօք խնդրել, թէ զիարդ է՝ զի մինչև էր մեռեալ եղբայրն, ոչ ազդ արար անտոն: Քանզի օտար է ամե 'ի քրիստոնէից այդպիսի խնդիր. զի ոչ եթէ անտոնի, այլ այ դատաստանն եղև անդանօր. որ զոր կամեցաւ՝ եած վճիռ մահու 'ի վր վախճանելոյն. իսկ զմիւսոյն պասքումն 'ի ծարաւոյ յայտնել հաճեցաւ: Բայց ա այն ևեթ պարտ է սքանչանալ յանձին անտոնի, զի 'ի հեռաւորոյն լերինն անդ նստելով՝ արթնութե սրտին տեսանէր զամ հեռաւորս՝ 'ի յայտնութէ տն:

Դարձեալ և յայլում ժամու, մինչ նստէր նա 'ի լերինն, դէպ եղև յանկարծակի համբառնալ զաչսն 'ի վեր յերկինս, և տեսա-

Է նել

նել յանձնանօթս զհոգւոյ ուրումն, զի ցնծա-
լից պարերգութ՟բ հրեշտակաց ը՟ առաջ նր՟
վերանայր յերկինս։ Ընդ այս նորահրաշ
տեսիլ հիացեալ անտոնի՝ և երանի տուեալ
այնմ գեղապարիկ ակմբի սբ՟ց, խնդրեաց
աղօթիւք, զի յայտնեսցի նմ՟ իրացն ըստու-
գուն։ Եւ վաղվաղակի ձայն եղև առ նա. և
ասէ. Սա է հոգին ամոնայ միայնակեցի, որ
'ի նիտրիա բնակէր։ Եւ էր ամոն այր հին-
աւուրց, որ 'ի մանկութ՟է մինչև ցծերութ՟ն եկաց
սրբութ՟բ հանապազ։ Իսկ 'ի նիտրիոյ մինչև
'ի տեղին՝ ուր նստէր անտոն, էր ը՟ մէջ գե-
նացք երեքտասան աւուր ճանապարհի։ Եւ
տեսեալ զնա կրօնաւորացն, որոց եկեալ էր
անդր, զի կայր 'ի զարմացման, աղաչեցին
յայտնել նց՟ զպատճառս զուարթութ՟ն։ Եւ
նա պատմեաց նց՟, թէ արդ հանգեաւ ամոն.
զոր բարուոք ճանաչէին յաղագս ստէպ գալոյ
նր՟ առ անտոն, և յաղագս մեծի համբաւոյ
ա՟ծապարգև նշանագործութ՟եց նորին։

Յորոց և զմի զայս արժան է ասել յայսմ
վայրի։ Դէպ եղև նմա երբեմն անցանել ը՟
լիւկոս անուն գետ մի* (որ թարգմանի գայլ գետ)
յորդեալ 'ի տարաժամ հոսանաց ջուրց. և
աղաչեաց զթէոդորոս՝ որ էր ը՟ նմա, փոքր
մի մեկնիլ 'ի նմանէ, զի մի տեսցեն զմի-
մեանց մարմնոց մերկութ՟ն։ Մեկնեցաւ 'ի
նմանէ թէոդորոս. բայց նա տակաւին՝ այն
ինչ կամէր մերկանալ՝ ամաչէր յոյժ։ Եւ
մինչդեռ նա յայս խորհուրդ մտաց վարա-
նէր, գտաւ ա՟ծային զօրութ՟բ յայն կողմն գե-
տոյն։ Անցեալ և թէոդորոս՝ որ և ինքն էր

այր ա̅ծապաշտ, յայնկոյս առ ծերն, սկսաւ զարմանալ. զի այնպէս վաղվաղակի էանց նա զգետովն: Եւ տեսեալ զոտսն անթաց, և զզգեստս նր̅ անմերձ 'ի ջրոյ, աղաչեաց զնա՝ պատմել նմա իբրև որդւոյ զդժուարահաւատ անցսն: Եւ իբրև ոչ կամեցաւ ասել նա զեղեալսն, անկաւ առ ոտսն, և երդուաւ, թէ ոչ թողից զքեզ, մինչև ոչ պատմեսցես, զոր թագուցանեսդ յինէն: Արդ̅ տեսեալ ծերոյն, թէ մեծապէս թախանձէ զնա եղբայրն թէոդորոս, աղաչեաց և ինքն զնա ոչ ումեք ասել զայն յառաջ քան զվախճան իւր. և ապա խոստովան եղև, թէ յանկարծակի գտի զիս փոխեալ յայսկոյս գետոյն, ոչինչ հետս առնելով 'ի վր̅ ջրոյն: Յաւել ասել նմա, թէ այս ձիրք է տրունական մարմնոյն միայն, և այնոցիկ՝ որոց նա տացէ (ո՞չ երբեմն՝ առաքելոյն պետրոսի,) կալ մարդկային մարմնոյս 'ի վր̅ լոյծ ջրոց թեթևութե̅: Եւ ը̅ բանի նր̅ ոչ ումեք ասաց զայս թէոդորոս յաւուրս կենդանութե̅ նր̅.

բայց յետ վախճանի նր̅ պատմեաց:

Իսկ կրօնաւորքն նշանակեցին զօրն, յորում ասաց անտոն զմահ ամոնայ: Եւ յետ երեսուն աւուրց 'ի գալ եղբարց 'ի նիտրիոյ՝ ստուգեցին 'ի նոցանէ. և գտին, զի յայնմ աւուր՝ և 'ի նմին ժամու ննջեաց ամոն, յորում զհոգի նր̅ ետես ծերն վերանալ յերկինս: Եւ միաբան ամենեքին զարմացան ը̅ անախտ մաքրութի̅ մտացն անտոնի, թէ զիա՞րդ յայնչափ հեռաստանէ եհաս առ նա վաղվաղակի իրացն ծանօթութի̅:

Գլուխ.

## Գլուխ. ԼԱ:

Պարգեւաւ նշանագործութեան անտառին. եւ դեռատեւ ձիւանի հոգւոյ:

Որբեւայրոս կամնն գտեալ զանտառն յարտաքին լերինն՝ աղաչեաց զնա աղօթս առնել վ՛ն Պողիկղատեայ սքանչելի կուսին՝ Նուիրելոյ քեռ, որ 'ի Լաւոդիկէ բնակէր: Քանզի ունէր սա դժնդակ ցաւս ստամոքաց եւ կողից, պատճառեալ 'ի խիստ պահոց եւ 'ի հսկմանց, եւ էր ամենեւին տկարացեալ բովանդակ մարմնովն: Եկաց յաղօթս անտառն. եւ զօրն, յորում մատոյց զաղօթսն, նշանակեաց որբեւայրոս: Դարձաւ 'ի Լաւոդիկիա, եւ եգիտ զկոյսն ողջանդամ: Եհարց զօրն ապաքինելոյ նր, եւ ահա գտաւ զոյգ ժամն առողջութեն ըն նշանակելոյ իւրոյ: Եւ զարմացան ամենեքին. զի գիտացին, թէ յայնմ պահու աղաչեաց զնա Ած 'ի ցաւոց իւրոց, յորում անտառն կարդաց աղօթիւք վ՛ն նր առ մարդասիրութն փրկչին:

Դրձլ եւ բզմ անգամ գուշակեաց անտառն աւուրբք եւ ամօք յառաջ զժամանակ, եւ զպատճառ եկելոց առ նա: Քանզի ոմանք երթային առ նա՝ միայն փափաքելով տեսոյ նր, կէսք վ՛ն տկարութեան իւրեանց մարմնոյ. եւ այլք վ՛ն այսահար ըմկանոց: Այլ ոչ ոք 'ի նոցանէ տրտմութիւն կալաւ երբեք վ՛ն նեղութե կամ վտանգի դժուարին ճանապարհին. եւ դառնային ամենեքեան պարարեալք հո-

դևոր կերակրոյն ։ Իսկ նա պատուիրէր նմա, ոչ անձին ընծայել զգովութի այսպիսի զարմանալեաց, այլ տն այ, որ զիւր ծանօթութին չնորհեաց մարդկան ը̃ տանելոյ մահկանացու բնութեանն նմա ։

Յաւուր միում յեղանել անտոնի յարտաքին մենաստանն, և յաղաչել եղբարց, զի աղօթս արասցէ 'ի նաւի միում ը̃ միայնակեացս, որ նաւելոց էին, էջ՝ գնաց 'ի նաւն. և էառ ինքն միայն զանտանելի ժահահոտութի ինչ ։ Իսկ ամենեքին ասէին լինիլ հոտ նեխուն աղածոյ ձկանց՝ և տառեխաց մթերելոց 'ի նաւին ։ Այլ ինքն պնդէր՝ թէ ինձ հարկանի օտար ինչ հոտ գարշուն ։ Իսկ մինչդեռ բանքն 'ի բերանն էին՝ և ահա յանկարծակի աղաղակեաց պատանի ոմն այսահար, որ անկեալ ղօղեալ էր 'ի ներքին խորշս նաւին. և իբրև բժշկեցաւ նոյնժամայն 'ի ձեռն անտոնի՝ յանուն տն մերոյ յի քի, յայնժամ 'ի միտ առին ամենեքին, եթէ այն էր գարշահոտութի դիւին ։

Միւս ևս այլ այր դիւահար՝ յերևելի տանէ՝ մատուցաւ առ նա. սա այնչափ դիւագնել էր, մինչև չգիտել զկալ իւր առաջի անտոնի, ևս և ուտել զկղկղանս մարմնոյն ։ Իսկ իբրև աղաչեցին զծերն՝ որք մատուցանէինն աղօթս առնել 'ի վր նր առ այ, այնչափ արտասուօք կարեկից եղև ծերն տառապանաց երիտասարդին, զի և զգիշերն ողջոյն հսկեր ը̃ նմա՝ ձգնէր ը̃դէմ մոլեգնութե տառապելոյն ։ Իսկ իբրև այգ եղև, դիմեաց դիւահարին 'ի վր անտոնի ը̃ հարկաւ 'ի նա ուժ-

ուժգին։ Այլ 'ի զայրանալ 'ի վ(երայ) ն(որ)ա արանցն որք մատուցինն, վ(ասն) առնելոյ զայն է ծերն, ասէ ցնո(սա) անտոն. մի զօտարին զայդ մնաս՝ տառապեալ երիտասարդիս համբերջիք. զայրագնութիս այս ոչ է դիւահարիդ, այլ դիւին։ Այլ յայն սակս յայս ժպրհութիւն եկն նենգաւոր թշնամին, զի ած հրամայեաց նմա երթալ է անջրդին տեղիս. և նշանակ հալածմանն սատանայի 'ի դևմանէ՝ եղև այս յարձակումն նո(րա) 'ի վ(երա)յ իմ։ Այլ է ասել ն(որ)ա զայս՝ նոյնժամայն զգաստացեալ պատանին, և փոհացեալ զայ, ծանեաւ զտեղին, ուր էրն. և կաթոգին գիրկս էարկ անտոնի, և ողջագուրեաց զնա։

Բազում և այլ անհամար նշանք եղեն այսպիսիք. զորս լուաք բազում անգամ 'ի միաբանպատմելոյ միայնակեցաց. սակայն պարտ է ոչ լոկ է սոսա հրաշանալ գլխովին, քանզի և ս քան զևս՝ որ զհետ նոցա են, ելանեն ըստ չափ մարգկեցզենս տկարուէ։ Յաւուր միում մինչդեռ զիններորդ ժամու աղօթսն մատուցանէր նախ քան զառնուլն զկերակուր, տեսանէր՝ զի յափշտակեցաւ հոգւովն, և տանէին զնա հրեշտակք 'ի վեր յերկինս. և յարգելուլ դիւաց զանցս նո(րա) է ոդս՝ սկսան հրեշտակք հակառակիլ է նո(ցա), և խնդրել թէ զինչ պատճառք արդեմանն իցէ, երբ չիք անտոնի յանցանք ինչ։ Այլ իբրև ջանային նք յառաջ բերել զմեղս մանկութե(ան) նո(րա), պապանձեցուցին հրեշտակքն զչարախօս լեզուս նց՝ ասելով. չէ օրէն ձ(եզ) 'ի համար բերել զյանցանս մանկութեան դո(րա), որք վաղուրեմն ջն-

ջեցան մարդասիրութ̃ փրկչին. այլ եթէ դի֊
տէք ինչ՝ յորմէ հետէ կրօնաւոր եղև, և
զանձն ո̃յ ընծայեաց, զայն մարթիք յառաջ
բերել: Զարախօսէին դևքն յանդգնա֊
գոյնս ստայօդելով բազում ինչ. և իբրև
ոչ գտաւ տեղի ստուե̃նց, բացաւ համար֊
ձակ անցք անտոնի: Եւ նոյնժամայն 'ի միտս
եկեալ նո̃ր՝ եգիտ զանձն 'ի նմին տեղւոջ՝ ուր
յառաջն էր, և ո̃ղ և էրն: Յայնժամ այլ
ոչ ևս յիշելով զկերակուրն, սկսեալ 'ի ժամէ
անտի՝ զգիշերն 'ի գլուխ եհան 'ի հեծութ̃ս
և յողբս արտասուաց, 'ի միտ ածելով զբազ֊
մութի թշնամեաց մարդկան, և զմաքառումն
այնչափ զօրաց, և զտաժանելի ճանապարհն
ընդ օդս յերկինս. և զբանն առաքելոյ, որ
ասէ. * Ոչ է մեզ պատերազմ ը̃ մարմնոյ
և ը̃ արեան, այլ ը̃դէմ իշխանին իշխանութե̃
օդոյս այսորիկ ‖: Որ և գիտելով, թէ նմին
իրի օդային իշխանութիք անդադար փորձեն
զմեզ, և պատերազմին և կռուեն, զի մի լիցի
մեզ անարգել և համարձակ մուտ յերկինս,
խրատ տայր՝ ասելով. * Առէք զսպառազի֊
նութին ո̃յ, զի կարող լինիջիք 'ի դիմի հար֊
կանիլ չարին յաւուրն չարութե̃ ‖. * զի որ
հակառակորդն իցէ՝ յամօթ լիցի, և մի ինչ
ունիցի ասել զմէնջ չարութե̃ ‖: Առ մեզ
յուշ լիցի և այն բան առաքելոյն, որ ասէ.
* Եթէ մարմնով և եթէ առանց մարմնոյ,
ո̃չ գիտեմ, ա̃ծ գիտէ ‖: Օ ի արդարև յա֊
փշտակեցաւ պօղոս մինչև յերրորդ երկինս,
ուր լուաւ բանս անճառս, և էջ. իսկ ան֊
տոն վերացեալ յօդս վերին՝ յետ մրցանաց
մար.

ժամանակին զատուց վերծ ։

Ունէր անդրանն և զայսպիսի ինչ շնորհս ․ զի թէ իմիք չէր գիտակ՝ 'ի նստիլն 'ի լերին անդ , և խորհէր յանձին իւրում լինել այնմ , յաղօթմս յայտնէր նմա Տր ․ և էր Տր դրեցելումն՝ * ուսեալ յայդ ‖ ․ Յետ այսորիկ անկաւ խնդիր 'ի մէջ եղբարց՝ և եկեալ հարցանէին զնա պատիպաւ , թէ զիա՞րդ կայցէ հոգին յետ արձակելոյ 'ի մարմնոյն ․ կամ զի՞նչ անցղի տացի նմա յետ ելիցն ։ Ի նմին գիշերի ձայն եղև 'ի վերուստ , որ կոչէր զնա յանուանէ , և ասէր ․ Մ՚ նստմիկէ արի , ե՛լ , և տես ։ Եւ նորա յարուցեալ ել արտաքս ․ (զի գիտէր , թէ ում արժան իցէ պատասխանի տալ ։) Եւ ամբարձեալ զաչսն 'ի վեր յերկինս , տեսանէ այր մի երկայն հսկայ և ահագին գոյժ , որոյ գլուխն յամպս հասանէր ․ տեսանէր և զոմանս թևաւորս՝ զի կամէին վերանալ յերկինս ։ Իսկ նորա ձգեալ զձեռսն՝ արգելոյր զանցս ելից նց ․ էր՝ զորս ըմբռնէր՝ և զընկենոյր յերկիր , և էր՝ զորս անկարանայր ունել՝ 'ի զուր ջանացեալ խափանել զնս ․ վնչ և զաւանացեալ ցաւէր ՃԸ վերաթևել նց 'ի վերոյ քան զինքն յերկինս ․ և այնպէս ուրախութի մեծ 'ի մէջ անկելոց , և տրտմութի 'ի մէջ վերծելոց՝ յանձին Հրունէր ։ Եւ նոյնժամայն ձայն եղև [illegible] 'ի միտ առ , զոր տեսանես ։ Յայնժամ լուսաւորեալ միտք խելամուտ եղև , թէ այն էր՝ ելանելն հոգւոց յերկինս ․ և սատանայ էր , որ արգելույր զնս ․ որ և ընդ իւրև գրաւէր զատորանկեալս ․ և Է թուիչս Տրց , զորս՝ ո՛չ կարէր որ-

սալ, ընոյր գառնուքն։ Նոյնպիսի տեսլեանց օրինակօք զարթուցեալ՝ որ ըստ օրէ ևս քան զևս ՚ի բարին թևակոխէր։ Նա զոր ցուցանէմ ՚ի վերին յայտնութեան՝ պատմէր եղբարց, ոչ առ սնապարծութեան ինչ, այլ զի ոչ յաղօթս անդադար հայցէր զնոյ օգնկնութին, նոյնպէս և ստիպէր պատմել հարցանողացն, և չառնոյր յանձն՝ մաքուր հոգին այն ՚ի քն՝ ծածկել ինչ ՚ի հոգևոր որդւոցն. մանաւանդ՝ յորժամ յայտնութի այսպիսի սքանչելեաց առաւելոյր զեռանդն յառաջդմութեն, և ցուցանէր զարդիւնս վաստակոց։

## Գլուխ. Կ. Օ.

Յարգութեան անուանն առ եկեղեցականս, և առաւելուն նր ընդդէմ հերձուածոց։

Ոչ երբէք եղև նմա յանկարծ ՚ի բարկութ ըմբռնել՝ զհամբերութիւն կորուսանելով, կամ զխոնարհութեն իւր ՚ի սնափառութի դարձուցանել։ Քանզի զամ ժառանգաւորս եկեղեցւոյ մինչև ցյետին աստիճանաւորս ստիպէր աղօթս առնել ՚ի վս իւր. և առաւել եպիսկոպոսաց և երիցանց՝ ոչ զխոնարհութեն աշակերտ խոնարհէր զգլուխ օրհնել ՚ի նոցանէ։ Իսկ զսարկաւագունս, որք վն շահելոյ ՚ի նմանէ զայլն առ նա, ՚ի խօսիլ ընդ իւրում. առաջի նց վն շահու նց՝ ծածկէր զնն նախ քան զինքն աղօթս մատուցանել առ տր. և ոչինչ ամօթ համարէր ուսանել և ինքն ՚ի նոցանէ. քանզի և հաւանէր իսկ

բա

բազում անգամ զնա, ընդ որս դատանէր. և եթէ լսէր ինչ պիտանի, խոստովան լինէր զօգուտն անձին իւրոյ:

Ունէր Անտոն և 'ի դէմս կերպարանաց շնորհս իմն նշանաւորս. և զայս ևս ձիրս սքանչելի ընկալեալ էր 'ի փրկչէն. զի թէ ոք յանծանօթից 'ի մէջ բազմութեան միաբանից ցանկայր տեսանել զնա, առանց ուրուք ցուցանելոյ՝ թողեալ զայլս առ Անտոն դիմէր. և 'ի դիմաց անտի ճանաչէր զհոգւոյն մաքրութին, և ընդ հայելի մարմնոյն զանախտ մտացն շնորհ նշմարեալ տեսանէր: Վասնզի հանապազ զուարթ զդէմսն ունելով յայտնապէս ցուցանէր, թէ խորհուրդք իւր յերկինս էին. ըստ բանի գրոյն, եթէ * Սրտի բերկրելոյ երեսք ծաղկեսցին. և ոգի՝ որ 'ի տրտմութեան իցէ՝ թախծեալ շրջի ||: Սոյնօրինակ և յակոբ ծանեաւ զնենգութիւնն նիւթեալ 'ի լաբանայ աներոյ իւրմէ, յասելն առ դստերսն իւր. * Ոչ են երեսք հօր ձերոյ ընդ իս որպէս յերեկն և յեռանդն ||: Այսպէս և սամուէլ ծանեաւ զդաւիթ. քանզի էր աչօք գեղեցիկ, և ատամունքն իւր սպիտակ որպէս կաթն. (կամ, և բարետես տեսանելով տն): Ըստ սմին օրինակի և Անտոն ճանաչիւր. զի միշտ միօրինակ ունելով զերեսս իւր 'ի յաջողուածս և 'ի ձախողակս՝ ոչ 'ի յաջողուեաց բարձրամտէր, և ոչ 'ի ձախողութեանց լքանէր, զուարթագին ունելով յամի զտեսիլ երեսացն:

Այլ առաւել սքանչելի փայլէր 'ի հաւատս ածպաշտութեան: Ոչ երբէք ընդ հերձուածողս

հա-

հաղորդեցաւ, գիտելով զհնացեալ չարուէ
նց՟ և զհեստուԹին. Այլ ոչ երբեք խօսեցաւ
ը՟ մանիքեցին և ը՟ այլ հերետիկոսս՝ գէԹ
Թէրև ընդ բարեկամի՝ և ոչ բան մի, բայց
միայն՝ որով հնար էր զնս յանօրէն մոլորուէ
անտի 'ի բաց դարձուցանել. ասելով, Թէ
այսպիսեացս բարեկամուէ և բանք կորուստ
են հոգւոյ: Այնպէս և յարիանոսաց խորշէր
գլխովին. մինչև քարոզել ամենեցուն, Թէ
չէ պարտ առ նոսա և հուպ իսկ լինել: Օ ի
Թէրև եկին առ նա ոմանք յարիանոսաց ան-
տի չարաց, յետ քննուէ Թէրև 'ի վը՟ եհաս
անօրէն աղանդոյ նց՟՝ հալածեաց զնս՟ 'ի լեռ-
նէն, ասելով, Թէ չար ևս քան զօձս են
բանք նց՟: Ապա 'ի համբաւել երբեմն ստուը՟
արիանոսաց, ոմ՟ Թէ նաև անտոն զնոցայն
դաւանի, զարմացաւ երանելին ը՟ յանդգ-
նուէ նց՟, և զայրացեալ յոգի իւր արդարացի
սրտմտուը՟, միանգամայն և յեպիսկոպոսաց
և 'ի համօրէն եղբարց աղաչեցեալ՝ էջ յա-
ղեքսանդրիա. և անդէն հրապարակախօս
բանիւ իւրով դատապարտեաց զարիանոսս,
ասելով, Թէ այս է յետին հերետիկոսուէն,
և կարապետն նեռին. և յանդիման քարո-
զեաց 'ի ժողովրդեան, Թէ որդին այ՟ ոչ է
արարեալ, և ոչ յոչէից եղեալ, այլ՝ խոկա-
կից՝ նոյնագոյ բնուէ ը՟ հօր, զի մի կարծի-
ցեն զնա արարած, կամ որդեգիր, և կամ
անուանակոչուէ լոկ: Ամպարշտուէ մեծ է
ասէ՝ և խորհիլ իսկ միոջ, Թէ էր երբեմն՝
յորժամ ոչ էր. որովհետև բանն այ՟, ած՟
յաւիտենական, մշտնջենաւորակից է հօր,

զի 'ի Հօրէ անմահի ծնաւ, որ էն միշտ։ Այլ և
ասէր. մի՛ լիցի ձեզ մի՛ և մի՛ իրօք. Հաղորդ-
լինել արիանոսաց. զի զի՞նչ միաբանութի՛ է
լուսոյ ընդ խաւարի. դուք՝ որք ճշմարտութեա՛
Հաւատայք, քրիստոնեայք էք. իսկ ն՛ք զանձն
այս է զորդին, ոչ յայյ Հօրէ է, արարած անւ-
ուանելով, ոչինչ իւ՞իք ընդհատ են 'ի հե-
թանոսաց, * որք զարարածս պաշտեն, և ո՛չ
զարարիչն, որ է օրհնեալ յաւիտեանս". ամ-
մէն ||։ Աստուածութի՛ ասեմ, զի նոքին իսկ առ-
ըներք զայլրանան, և մեզ արարածք՝ ըն առա-
քելոյն բանի՝ հեծեծեն ընդդէմ արիանոսաց մո-
լեգնութեն. զի նոցին իսկ արարածոց հաւա-
տարեցին զինքն նմ, որով ամ, և յորում ամ-
ինչ եղեն։

Անպատմելի է, թէ այս քարոզութի՛ մեծի
առն՝ որչափ հաստատեաց զժողովուրդն 'ի
հաւատս։ Վասնզի մեծապէս խնդային՝ տե-
սանելով, զի սուրբն եկեղեցւոյ նզովէր զառ
'ի թշնամւոյն սերմանեալ զքստամարտ հե-
րետիկոսութիւնն։ Այլ էր տեսանել յայնժամ,
զի առ հասարակ մեծ և փոքր՝ այր և կին 'ի
տանց ելեալք, թո՛ղ զքրիստոնեայս, զի և
հեթանոսք անգամ, և քուրմք իսկ կռոց՝ 'ի
տունն ամն խուռնընթաց դիմէին, ասելով.
Ուր իցէ՝ աղաչեմք, զի տեսցուք զայրն այյ.
քանզի այս էր անուն անուանի առ ամենե-
սին։ Այլ խնդրէին մերձենալ զա՛նէ 'ի դրօ-
շակ հանդերձի նր, հաւատով ունելով՝ թէ և
լոկ հպիլն բազում օգտէ նր։ Այլ ո՞ կարէ
ասել, թէ քանի՛ դիւահարք՝ և պէսպէս
ախտաժէտք ազատեցան յայնժամ. քանի՛
աւար

աւար կապտեցաւ 'ի դըրօշելոց անտի. և քա-
նիք 'ի հեթանոսական մոլորութե՛ զերծեալք
'ի մերս խառնեցան հօտ: Եւ արդարև այն-
չափ բազում, մինչև 'ի սակաւ աւուրս թի՛ւ
դարձելոցն 'ի կռապաշտութե՛ առաւելո՛յր ք̃
զբազմութի՛ն եկելոցն 'ի հաւատս ընդ ամն որ-
ջոյն: Եւ յորժամ ընկերքն անտոնի արգելուին
զխուռն ընթացս բազմութե՛ն, կարծելով,
թէ նեղէ զնա ամբոխ ժողովրդեան, նա
հանդարտութեամբ սրտի ասէր ցնոսա.
Մի՛թէ այս ժողով մարդկան մե՛ծ իցէ քան
զամբոխ դիւ՛ացն. կամ թէ բազմութի՛ պաշ-
տօնատիրացս՝ որ զան զհետ մեր, յոլովա-
դո՞յն իցէ քան զզաւմարտակ մրցողացն ընդ
մեզ 'ի լերին անդ:

Դէպ եղև՝ զի 'ի դառնալն նր, և 'ի գնալ մեր
զկնի նր մինչև 'ի դուռն քաղաքին՝ կին մի
'ի թիկանց կուած սկսաւ աղաղակել ասե-
լով. Մնա՛ ինձ այրդ այ, դուստր իմ չարա-
չար այսահարի 'ի դժնդակ դիւէ. Մնա՛ աղա-
չեմ՝ մնա՛ ինձ, զի մի՛ և ես անկեալ մեռայց:
Զայս իբրև լուաւ սքանչելի ծերն, յորդո-
րեալ 'ի մէնջ, այլ և ինքն իսկ կամակար
յօժարեա՛լ՝ զտեղի էառ վայր մի: Եւ իբրև
մերձ եղև կինն առ նա, և աղջիկն անկեալ
կայր հերարձակ, յաղօթս եկաց նա ան-
մռունչ առ տր յս. և իբրև ետ զանունն յսի
քսի՝ եւ վաղվաղակի այսն պիղծ: Եւ այն-
պէս աղջիկն ողջացաւ, և ժողովրդն փառս
տայր այ, իսկ մայրն խնդութե լի եղև. այլ
ինքն ուրախ լինէր, զի դառնայր անդրէն
'ի ցանկալի միայնարան իւր:

Գլուխ.

# Գլուխ · ԺԵ ։

## Մեծաբանութիւն անարժանի ընդ արդարոյն իմաստասէրս ։

Եւ էր անտոն՝ իմաստուն յոյժ · եւ այս իսկ էր զարմանալի յանձին նր՟, զի չէր նր՟ ուսեալ գիրս, այլ ա՟միր միտավարժ էր եւ լի հանճարով իմաստութե՟ ։

Եկին երբեմն առ նա երկու հեթանոս իմաստասէրք · եւ կարծեցին՝ թէ դիւրին իցէ նց՟ խաբել զանտոն · եւ էր նա յայնժամ յարտաքին լերինն ։ Եւ իբրեւ ետես զնա, ծանեաւ 'ի դիմաց անտի նց՟ զի հեթանոսք էին · եւ մատուցեալ ըն՟ առաջի նց՟ խօսիլ սկսաւ ըն՟ նս՟ թարգմանաւ՝ այսպ՟ · Ուստի՞ իցէ ձեզ իմաստնոցդ աշխատ լինիլ եւ գալ 'ի հեռաստանէ առ այր մի տխմար։ Եւ յասել նց՟, թէ դու չես տխմար, այլ մեծ իմաստուն, պատասխանի ետ նց՟ զգօնութբ՟, եւ ասէ · եթէ առ տխմարս եկիք, 'ի զուր են աշխատանք ձեր · ապա եթէ համարիք զիս իմաստուն լինել՝ եւ ունիլ յանձին զիմաստութի՟, բարւոք է ձեզ զհետ երթալ այնմ՛ զոր գովելի դատիք · զի պարտ եւ պատշաճ է զհետ երթալ բարւոյն ։ Եթէ ես գայի առ ձեզ, պարտ էր ինձ նախանձել ըն՟ ձեզ · այլ զի դուք եկիք առ իս իբրեւ առ իմաստուն, եղերուք իբրեւ զիս քրիստոնեայ ։ Եւ անդէն 'ի բաց մեկնեցան 'ի նմանէ իմաստասէրքն, զարմացեալք երկոքումբք, եթէ ըն՟ ուշիմ միտս նորա, եւ եթէ ըն՟ հանելն նր՟ զդեւս ։

Ըստ

Ըստ նմին օրինակի և զայլս յիմաստնոց աշխարհիս՝ որք խորհեցին ծաղր առնել զնովաւ իբրև զի էր առանց դպրութե, այսպիսի բանիւ՛ պապանձեցոյց, ասելով. Ասացէք ինձ, թէ ո՞րն է յառաջագոյն. միտքն՝ եթէ գիրն. և ո՞րն իցէ սկիզբն միւսոյն. արդեօք միտք 'ի գրոց, եթէ գիրք 'ի մտաց ունին զծագումն: Իսկ յասելն նց, եթէ միտք են առաջնորդ և գտակ գրոց. ասէ անտոն. ապա ուրեմն՝ եթէ ուրուք միտք ողջ իցեն, այնպիսւոյն չունի պէտս գրոց: Արդ՝ ո՞վ ոք յեղելոց անդ ոչ խրախուսեաց արդեօք 'ի լուր բանիցս յաղթութե. որովհետև և նոքին իսկ՝ որք յաղթեցանն, յիմարեցան յանձինս, զքանչանալով ըստ այնչափ ուշիմութի հանճարոյ անուս անձին: Զի թէպէտև անապատական ոք էր, և վայրաբնակ և լեռնակեաց զամ աւուրս, բայց ոչ էր նա իբրև զմի 'ի շինականաց վայրենեաց և 'ի տխմարաց, այլ զուարթամիտ և քաղցրաբարոյ. և բանք բերանոյ նր ըստ պատուհրանի առաքելոյն՝ իբրև ածային աղի՛ համեմեալք. մինչև ոչ ումեք լինիլ ատելի, այլ ամենեցուն սիրելի:

Յետ այսորիկ՝ ոչ թէ թեթև ինչ էր երկիցս խայտառակել նր զհեթանոսս, յաւելին գալ առ նա յերրորդում նուագի և այլ իմաստակք ըմբռնեալք գլխովին 'ի մռայլ կուրութե իմաստութե վս այսորիկ, անուանիք յամ փիլիսոփայական արուեստս իմաստից իւրեանց՝ իբրև կատարեալ իմաստունս: Ագ իբրև սկսան խնդրել 'ի նմանէ զբան հաւատոյ մերոյ, որ 'ի Քս Յս. և ջանային

որ

որսալ զնա պատիր բանիւք սոփեստական
հարցուածոց յղփս ածընկալ սբյ խաչին ,
նա վայր մի 'ի լռութ հանդարտեղ աւաղեաց
կարեկցութ զմոլորութ նց . ապա թարգմա_
նաւ , որ զբանս նր գիտէր բարւոք և անվր_
թար յեղուլ 'ի յոյն լեզու , խօսիլ սկսաւ՝ և
ասէ . Որ՞ն առաւել վայելուչ է և համեստ ,
զխա՞չն պաշտել , եթէ պաշտամանց ձերոց
զշնութ , զհայրասպանութ , և զմծղնէութն
ընծայել . երբ յառաջնումն անդ տեսանի
արհամարհութ մահու , որ է պսակ պանծալի
առաքինութեց . իսկ յերկրդումն գարշելի կրօն՝
ուսուցիչ պղծագործութեց : Ի՞նչ լաւա_
գոյն ես թուի արդեօք . ասել՝ թէ բանն այ
մնալով որ էրն , էառ զն մերոյ փրկութե
զմարմին մարդկային , զի կցորդ լինելով մահ_
կանացուն մերում՝ բարձրացուսցէ զմեզ յեր_
կինս , և հաղորդս արասցէ երկնաւոր բնութեն .
եթէ՝ այնմ , որ դուքդ ասէք , որ ածեղէն
մնաց բովանդակ հօսումն է , (որ է մարդն) ,
խոնարհել զգլուխ իւր յերկրպագութ տա_
ճարաց , և ընծայել զերկնաւորն անուն ածա_
կան՝ սրաձարեղինաց և սողնոց նմանութ :
Որո՞վ բերանով յանդգնիք զքրիստոնէից
ծաղր առնել հաւատս . ոյք ասեն , թէ քս
որդին այ առանց իրիք անձին այլայլութ , կ
մնասու սկսաւ լինիլ՝ որ ինչ ոչ էր , և միան_
գամայն մնաց՝ որ ինչ էրն . որովհետև դուք
զհօգին յերկնուստ վայրաբերեալ , ոչ միայն
'ի մարմին մարդկային , այլև 'ի սողնոց և յա_
նասնոց մարմինս թաղէք : Քրիստոնէից
հաւատք խոստովան լինին , եթէ ած զն փր_
կութ

կուռ մերոյ եկն յաշխարհ. իսկ դուք զանձին հոգւոյն բուռն հարեալ պատմել՝ այսր անդր զնոյն տարուբերէք։ Հաւատք քրիստոնէից, որ գիտէ յարգանօք պատուել զամենակարողութիւն այ՝ և զողորմութիւն, ըստ նմին և ՚ի վր բերէ ասելով, թէ՝ և մարմնանալ այ եղև հնարաւոր. այլ այնպէս, զի զիջումն նորին ոչինչ պակասեցոյց ՚ի մեծվայելչութենն։ Այլ դուք, որք զհոգին զառ ՚ի յստակաբուղխ աղբերէն այ անդստին հոսեալ՝ ասէք անարգաբար յերկիր անկեալ, և զնոյն իշխէք եւս՝ փոփոխական և յեղյեղուկ ասել յետ առաջին նուաստութեան իւրոյ, դովին անարգանօք հոգւոյն և զմարմնական բնութիւն յաւիտենից՝ թշնամանէք ամբարիշտ լեզուաւ։ Վասնզի պատկերն, որ՝ ըստ ձեզ՝ յինքն բերէ զբնաւոր նմանութիւն իւրոյ սկզբանն, որոյ և մի և նոյն է ասէք գոյացութ ընդ այնմ՝ յորմէ եկն յառաջ, անշուշտ և զիւրն նուաստութիւն և զնախատինս առ սկիզբն անդր տարեալ ձգէ։ Ապա տեսէք, զի ձերովդ հայհոյութբ նախատինք հոգւոյն առ հայրն իւրեանց (ըստ կոչելոյ ձեր զնա) դառնան։

Գիտեմ, զի զխաչն տն մերոյ յսի քսի առտանօր մեզ ՚ի դէմս ածէք։ Ա՛ղէ, զինչ գարշութիւն կրօնի իցէ այս։ Ոչ ապաքէն լաւ ես է համբերութբ յանձն առնուլ զխաչն, կամ զայլազգ ինչ մահ տուեալ յանօրինաց, քան զխնդեայն ողբալ զթափառական և զանստոյգ վազս զկնի ոսկրայ։ Ամաչեսջիք աղաչեմ, ՚ի դաւաճանութեց տիւփոնաց չոյն. ամաչեսջիք ՚ի փախստենէ, և ՚ի

 դժն

դժնդակ որդեկերուեց կռռնոսի։ Ծանօթէ հարջիք 'ի հայրապատանուէ և յազգապղծուէ դիտսի. պատկառեցարուք յառևանդուեց և 'ի խառնակուեց նր ը կանայս և ը մանկունս։ Այս ը ձերոց քերթողացդ յօդելոյ՝ 'ի լրուեն մոլեգին տռփանացն անյագուէ եւ զձայնարձակուէ մեղկաղէտ թախանձանաց սիրոյ։ Այս խոյացաւ 'ի ծոցս դանայեայ՝ ինքն նին եղեալ հոսմանթ և կապէնք։ Նոյն և աւաչ ձայնիւ թևապարեաց 'ի գիրկս ղետդվայ։ Նա ինքն անադորոյն դառեղ առ իւր սերունդ՝ ապականեաց զարքայորդին սպասաւորուէ հաւուց թռուցելոց։ Այդ հաւատք են ձեր, և այդ պաշտամունք դիւնից ձերոց. և դոյն այդ զարդք և պաճուճանք մեհենից ձերոց։

Բայց ա՛ղէ՝ արդար դատաստանաւ վն ձերոյ իսկ փրկուէ տո՛ւք զիրաւն իմոցս բանից։ Ծիարդ թուի ձեզ. զնմն՝ որ ինչ կայ դրեալ 'ի գիրս քրիստոնէից՝ պա՛րտ է հաւատալ, եթէ և ոչինչ։ Եթէ ոչինչ. ապա և ո՛չ զանուն խաչին՝ զոր անարգէք, ճանաչէք։ Իսկ եթէ զնմն պարտ է հաւատալ, զի՞ է զի երբ 'ի նոյն գիրս առընթեր խաչին զհետ յարի յարուէն, ապառուամ բանիւք զնծայլին չարչարանս թշնամանէք ևեթ, և ո՛չ փառփաղակի 'ի վն բերէք զկուրաց տեսանել, զխլից լսել, զդնայցս կաղաց, զորբիլ բորոտից, զծովուն հնազանդել ոտն իւրուամ որ գնայր 'ի վն. զգիշւոյ հալածուէն, զմեռելոց յարուէ. և զննջեցելոց զմերելս 'ի խորոց ներքնոց։ Այս ամ արձանագրեալ կան

յածային գիրս, զորս ապախտ առնէք. և 'ի նոյն մատենի բովանդակին զամենայն մեծի վայելչութե նր, և անարգանքն մահու: Ո՛վ որոյ՝ 'ի բաց եղեալ զախտ ատելութե, որով պաշարեալ գնէք, նոյնհետայն գտջիք, թէ յն է ճշմարիտ ած, և թէ վն փրկութե մարդ-կան՝ զգեցաւ զտկար բնութիս մեր զայս: Բայց արդ՝ և դուք, թէ չկցէ ձեզ պատկա-ռելք, պատմեցէք մեզ զկրօնդ ձեր. այլ զոր պաշտամունս մարթասցի յառաջ բե-րել առաջելւդ մոլորութե՝ 'ի միջոյ անտի այնչափ գարշութեց և անմիտ մտածութեց. և-թէ ոչ՝ գուցէ (ոչ լսեմ) առասպելս լինիլ առիցէք զդից ձերոց զպղծագործութիս, և զանզգամութիս, և զունայնութիս, և զմեռե-լութիս, այլաբանութբ քօղարկել զնս, զպերսե-փոնէ զառևանգեալն՝ երկիր կոչելով, զկա-ղացեալն և զանպիտանն հեփեստոս՝ հուր, զհերա՝ օդ, զապողոն՝ արեգակն, և զարտե-միս՝ լուսին. զպոսիդոն՝ ծով, և զառաջնորդն անառակութեց զդիոս՝ եթեր կմ երկին: Եւ յետ այսպիսի ժպրհութե սուտակապաս չքմեղութեց՝ տակաւին ոչ զած՝ այլ զհաստ-ուածս ընդունիք՝ արհամարհել զհաստիչն բոլորից: Ապա եթէ՝ գեղեցկութի տարերացս ձգեաց զձեզ 'ի պատիւ իւրեանց, արժան էր օրինօք զիրսն քննել. և սքանչանալ ևեթ պարտ էր, և ոչ բնաւ պաշտել զնս. զի մի պատիւն արարածոց՝ նախատինք լիցի արար-չին: Քանզի ած այդմ խոստովանակ ընթացից, ընդ որ դուքդ գնայք, և պատիւ ճարտարա-պետին 'ի տունն փոխաբերի, և ճարտարութե

բժշ

քաջ շնչին՝ գերագոյն ընծայի, և տամ Քրիստոսաբար առողջութիւնք և զօրութիւնք՝ գործոցն համբերութեան։ Իւ-տարդ՝ զինչ աս այսպիսիկ ունիք ասել, որով ծանիցուք, եթէ կայցէ ինչ արժանի երկ-բանաց 'ի խաչն, որ պայծառանալի թուի յաչս ձեր։

Ընդ այս պատճառաւն՝ աշխարհաւեր փիլիսո-փայիցն, անհնարինք առնէին և քրթմնջէին ընդ միմեանս. իսկ անմիտն հերձին ծաղրելով՝ միւսանգամ թարգմանեաս ասէ զնա։ Զօ-րէնքդ իսկ՝ որպ ասացուք, ակն յանդիմանացու-ցանեն զանբանականութիւն խաբեանց արտաքնոց։ Այլ դուք զի զամս ինչ մարտեաւականս ընդունիք զատիք իբր հարկաւոր իւրոք՝ զամէն այդ ուղղութիւն Քրիստոսութի և զՏէրս հաստատել հաւատս սարսափելիք։ Իսկ արդ ասէ ասացէք ինձ. ծա-նօթութիւն չէ՞ որով որպէս յայտնագոյն ցու-ցանի. 'ի ձեռն բանիցն ասպացուցի, եթէ 'ի ձեռն գործոցն հաւատոց։ Իսկ որն իցէ նա-խապատիւ, գործն հաւատոց, եթէ խնդիրք բանից և փաստից։ Այլ եւ տուեալ պատասխա-նի՝ և ասեն. հաստատագոյն է քան զբանս գործն, և այն այդ՝ յայտնագոյն ամենայնի հաւատալ անտանի՛ ասէ զնա. բարւոք ասա-ցիք. զի զգործն յառաջ եդեալ 'ի հաւատոյ՝ յօժարութի հաւատոյն ծնանի. իսկ 'ի տրամա-բանականն միջամբանութեանց հնարելոց 'ի Քրիս-տոսական մարտ ծագեցաւ հակառակութի։ Արդ՝ ասէ, յորժամ ունիցի զգործն հաւա-տոց 'ի սրտի հաստատեալ՝ աւելորդ է այ-նուհետև բանիցն յօդուած, որով հնարիք խափանել զհաւատոյն հաստատութիւն 'ի միտս

մեր. և սակայն շատ ևս այն է՝ զի տկարա-
նայք մեկնել զխմացուածս մեր: Նոյնպէս
զօրագոյն են գործք մտացն քան զփաստս

սոփեստական հնարից խաբէութե:

Մեք քոյ հաւատացեալքս զխորհուրդ կե-
նաց մերոց ոչ յիմաստութե աշխարհիս ունիմք
հաստատեալ, այլ 'ի զօրութե հաւատոցն, որ
տուաւ մեզ յայ 'ի ձեռն քո: Զայս ճշմար-
տութի իմոցս բանից՝ կարգ իրացն՝ հանապա-
զորդ գործելոց՝ յայտ յանդիման կացուցա-
նէ: Շատ են մեզ տգիտացս՝ և ձերոց
դպրութեց անծանօթ եղելոցս՝ առ. ծանօ-
թութիւն այ՝ նոր բանքն միայն: Հաւասիկ
մեք յայնչափ բազմութե հեթանոսաց որո-
շեալք՝ ընդ ամ աշխարհ օր ըստ օրէ աճեմք 'ի
բազմութի. իսկ ձեզ յետ գալստեան ամն պա-
կասեցան ճարտարմտութիք սնոտի խաբէութեց:
Հաւադիկ մեք զանկեղծ հաւատսն քոյ
քարոզելով, զկռապաշտութիս կործանեցաք.
և քարոզութբ աննարգական խաչին քոյ ոսկիա-
պատ մեհեանք անկան: Այլ դուք՝ թէ կա-
րող էք՝ ցուցէք, եթէ ում ումեք հաւանե-
ցուցիք մանուածովք բանից նախապատիւ
առնել զհեթանոսական պաշտամունսդ քն
զքս: Հաւադիկ ընդ ամ երկիր ծանուցեալ է
քն՝ ճշմարիտ որդի այ. ոչինչ զօրեն պերճա-
խօսութիքդ իմաստակաց, և փիլիսոփայական
վիճաբանութիքդ խափան լինել բազմութե
հաւատացելոց: Զխաչելեալն կարդամք,
և բովանդակ դևք՝ զորս դուք իբրև ածս
պաշտէք, հեծեն՝ մռնչեն, և յերեսաց նշանի
տէրունական խաչին իսկ և իսկ հալածին 'ի
մարմ-

մեծարմանց այսահարաց: Ո՞ւր են արդ՝ այն առասպելախօս պատգամքն. ո՞ւր հմայք եդիպտացւոց. ո՞ւր մոգուցն Թովչութիւնք: Ապաքէն կապտեցաւ ունայնացաւ այդ ամ՛ 'ի ժամուն, յորում 'ի խաչէ անտի ահագին ձայնիւ՛ որոտաց քո ընդդէմ նցի: Եւ ահա Թողեալ ձեր զխուռներամ մնոտեացդ անպիտանութի՞ իշխէք այսպն առնել զփառաւոր մահն յի:

Եւ զայն զի՞ առնիցէք, զի հեթանոսականդ պաշտօն՝ ոչ ուստեք 'ի բռնութէ Թագաւորաց հալածահարեալ նրբէք, այլ առաւել հաճոյ յաչս աշխարհի երեւեալ, և մարդկային սատարութիւք ամրացել, ինքնին վաղուրեմն կործանեալ անկաւ: Իսկ մեք ծառայք քոյ, որչափ առաւել ճնշիմք, այնչափ 'ի վեր բարձրանամք, և ծաղկել բարգաւաճիմք: Դրօշեալք ձեր երբեմն պահարկեալք 'ի մէջ որմոց պաճուճելոց՝ յերեսաց անտի հնութէ վաղու և խորթնացել անկան: Բայց վարդապետութին քո, որ ձեզ յիմարութի Թուէր և խաղ, Թէպէտ և բռնոն սաստկութէ բռնաւոր իշխանաց հալածչաց տարաւ, Թէպէտ և ազգի ազգի արհաւիրս կրեաց 'ի յարուցելոց անտի 'ի վ՛ր ն՛ր, սակայն յոչ ինչ մասին աշխարհի ամփոփել փակի, և ոչ ը̃ իւիք սահմանօք խուժադուժ ազգաց արգելել դնի: Քանզի երբ. այլ՝ այսչափ ճառագայթ ածգիտութե ծագեաց: Նոր այսպէս 'ի մի զուգեցան գեղեցիկ առաքինութիւք. ժուժկալութին յամուսնութէ, և կուսութին յեկեղեցւոջ: Փայլէ փառաւոր՝ արքա-

կան

կամ հաստատութեան վկայից մ͞ն ա͞ն իւրեանց ։

Նաւ ոչ մի ակնդէտ խաչին քոյ ։

Եւ արդ՝ քանզի դուք 'ի մէջ այսչափ հանդիսից առաքինութեց՝ վարմս արկանէք որոգայթադիր բանից ճարտարութե, եւ զճշմարիտ լոյս արարածոց ստուերակերպ ձեռնարկութք ջանայք խաւարեցուցանել․ ահա մեք՝ ըստ ասից մերոց վարդապետին՝ ոչ հեթանոսական պատիր բանիւք, այլ մեկին եւ յայտնի հաւատովք հաւանեցուցանեմք, որ քան զհաստատութի բանից նախապատիւ է ։ Աւասիկ են աստ դիւահարք, որք նեղին յայսոց չարաց ։ Եւ կացուցեալ զնա 'ի միջի 'ի վր էած ասելով․ արդ՝ դուք ճարտարութք բանից ձերոց, եւ որով եւ է ձերովդ չարարուեստ թովչութք հանէք 'ի սոցանէ զկարծեցեալ ա͞ծս ձեր ։ Ապա թէ չիցէք ձեռնհաս՝ խոստովան լերուք զպարտութի ձեր, եւ 'ի նշան յաղթութեն քոյ ապաստան լերուք․ եւ առժամայն զհետ հաւատոյ խաչեցելոյն եկեսցէ զօրութի մեծավայելչութեն ։

Զայս ասաց՝ եւ անդէն իբրեւ կարդաց զանուն յի, եւ կնքեաց զճակատս դիւահարաց կենարար նշանաւ յանուն ամենասուրբ երրորդութե, նոյնժամայն դեւքն 'ի բաց հալածեցան, ընդ նմին եւ ընդունայն իմաստութի փիլիսոփայիցն խայտառակեցաւ ։ Քանզի զահի հարան պակուցմամբ ընդ առն զօրութի․ յոր տեսանէին բաց 'ի կորովամտութենէ զեղեալ եւ ա͞ծաձիր սքանչելեաց առատութի ։ Այլ նա զա͞ծն քո ընծայելով՝ որ բժշկեցան, յաւել անդրէն եւ ասէ ցնա․ Մի՛ համարիք, եթէ

իմ

իմ իցէ տուեալ ՏՅ զբժշկութի. նա ինքն քո ՚ի ձեռն ծառայից իւրոց գործէ զայս սքանչելիս: Հաւատացէք և դուք. և տեսանիցէք, զի ջերմեռանդ հաւատքն առ ած, և ոչ ունայն փքացումն բանից ճարտարութե ար-ժանի դտանի այդպիսի նշանաց: Յորժամ անդր խաչեցելոյն լերուք աշակերտս. և նմանօղ մեզ լերուք ծառայից նր. և զայս չափ գիտուէ հեթիք համարել, ոչ եւս ՚ի խնդիր լինիջիք այսուհետև ծածկեալ իմաստից անիմաստութէ: Յայսմ վայր խօսեցեալ անուանի յապուշ կրթեցան փիլիսոփայքն, և մեծարանօք զհրաժարական ողջոյնն տուեալ մեկնեցան ՚ի նմանէ, խոստովան լինելով եթէ յոյժ օգտեցան ՚ի տեսուէ նր:

---

## Գլուխ. ԺԹ.

Վասն Եւստաթեայ առ անդրէն. և գաւազանաւն
նր ձե պատուաստելոց հիւանդաց:

Եւ այս իսկ սքանչելի է յանձնի առնս այսորիկ. զի զայր մի բնակեալ ՚ի ծաղաշխարհի՝ չուք իշխանաց և նմ արքունական կանքն Թագաւորին համբաւելին: Վասնզի ինքնակալն կոստանդիանոս, և արքայորդիքն նորին կոստաս և կոստանդ՝ լուեալ զայս ամ, բազում անգամ թուղթս առ նա գրէին իբրև առ հայր, և աղաչէին զնա՝ փութացարձ գրովք ուրախ առնել զնս: Իսկ նա միօրինակ կալով ած և եր յառաջ քան զհասանել թղթոց, ոչ ինչ յանձնէ. այլ այլոց

վռ իշխանացն ողջունի. և ժողովէր առ ինքն
զմիայնակեացս՝ որք երբեմն առանց թղ-
թոցն ընդունելուե, ասէր ցնոսա. Թագաւորք
աշխարհի թուղթս առաքեցին առ մեզ. այլ
զինչ զարմանք են այս քրիստոնէից: Ո՛չ ի թէ-
պէտ և այլ և այլ իցեն աստիճանք պատուոյ,
սակայն միօրինակ է ծնունդ և մահ ամենե-
ցուն: Այդ իսկ են ամ պատուով պաշտելի,
և նոյն ողջունով չափ պահելի, զի գրեաց ած
օրէնս մարդկան, և զի ՚ի ձեռն որդւոյ իւրոյ
ճոխացոյց զեկեղեցի իւրովք պատգամօք:
Ո՛չ է կայ ընաւ կրօնաւորաց՝ և թղթոց թա-
գաւորաց. և զի՛ առից զնամակսդ, որոց
չեմ տեղեակ զարժանին գրել անդրէն ըստ
նոցին կարգի պատուե ողջունի:
Այլ իբրև աղաչեցին զնա միաբան եղբարք՝
մխիթարել գրով իւրով զքրիստոնեայ թա-
գաւորսն, զի մի՛ լռութեամբ իւրով դառ-
նացէ զայլազգին, գրեաց արժանաւոր պխնի
բանից թղթոցն, զոր ընկալաւ: Իսկ զառա-
ջինն գովեաց զնս՝ վռ պաշտելոյ նց զքս, և
յետ այնորիկ առաջի եդեալ զփրկարար վար-
դապետութի՝ յուշ արար նց, զի մի՛ մեծ ինչ
համարեսցին զարքայական իշխանութիւն, և զի
մի՛ մարմնաւոր տէրութեամբ փքացեալք՝ անգի-
տանայցեն զանձինս, թէ մարդիկ են, և կա՛մ
մոռանայցեն՝ թէ հանդերձեալ են դատել ՚ի
քսէ: Յետ ամի՝ յուշ արար նց զմարդասի-
րութի առ հպատակս, և զարդարութի, և ըզ-
խնամ ՚ի վր տնանկաց. և եդ նց վկայութի թղ-
թոյն՝ թէ մի է մշտնջենաւոր թագաւոր ամ
յաւիտենից յս քս: Զոր ընկալեն իշխա-
նաց՝

նաց՝ անպատմելի խնդութ՟ լնուին։ Իսկ համ-
բաւ սրբութ՟ե անտանի առաւել ևս մեծա-
նայր առ ամենեսին, մինչև ցանկալի լինել
կոչիլ որդի նորին։ Վասնզի սքանչելի մար-
դասիրութ՟ի նր՟ առ եկեալսն՝ զամենեցուն
սէրն յինքն ձգէր։

Արդ՝ իբրև խայտառակեաց զհեթանոսս,
խորտակեաց զթագաւորս, և սփոփեալ մխիթա-
րեաց զեղբարս, դարձ առնէր անդրէն 'ի ներք-
սագոյն լեառն՝ և 'ի սովորական խստամ-
բերութ՟իս։ Իսկ անդ՝ բազմ՟ անգամ՟ 'ի շրջիլն և
'ի նստիլն ի՟ այնոսիկ՝ որք գային առ նա, լի-
նէր 'ի զարմացման՝ իբ՟ դանիէլի։ Իսկ յետ
ժամուց ինչ անցանելոյ՝ ապա պատասխանի
առնէր ըստ առաջին բանիցն կարգի. յորմէ
իմանային, թէ գաղտնի ինչ յայտնութ՟եց եղև
տեսող։ Վասնզի և 'ի լերին անդ կալով՝ կան-
խագէտ լեալ ամի, որ ինչ գործէին հեռա-
գոյնս յեգիպտոս, պատմեաց սրապիոնի ե-
պիսկոպոսին, որ նստէր անդէն։

Զհետ այսորիկ զողբալին ետես տեսիլ
և զաղբերահոս արտասուաց արժանին։
Վասնզի 'ի գործել իւրում զձեռագործ՝ մինչ-
դեռ շուրջ նստէին կային զնովաւ եղբարքն,
անթարթափ յառեաց զաչսն յերկինս՝ հա-
ռաչելով և յոգւոց ելանելով։ Իսկ յետ սա-
կաւ պահու՝ 'ի կարգի անդ եղելոյ յայտ-
նութ՟են՝ դողումն կալաւ զնա առ սաստիկ ցա-
ւոցն. և փաղփաղակի 'ի ծունկս իջեալ տարա-
ծեաց զանձն առաջի այ՟, և աղաչէր՝ զի
գթութ՟ իւրով 'ի բաց դարձուսցէ զհանդեր-
ձեալ չարիսն։ Զհետ եկին պաղատախսառն

աղօ-

աղօթից՝ առուք սրտասուճաց . և երկիւղ մեծ անկաւ 'ի վ՛ր շուրջ եղելոցն , մինչև աղաչել նշ՛ զի յայտնեսցէ նշ՛ զայնպիսի ցաւագին տեսիլ ։ Մ՛յլ 'ի սաստիկ հեկեկանացն հեղձամուղձ լինէր ձայնն , և լեզուն արգելլոյր 'ի լալոյ անտի . և 'ի քունն առնել անձին՝ հեծեծանօք թանքն ըն հատէին ։ Եւ հազիւ ուրեմն բարբառ արձակել լալագին՝ սկսաւ ասել . լու էր ինձ որդեակք՝ երագահաս մահուամբ զառաջիս ունել մօտալուտ չարեացն ։ Զայս ասացեալ անդրէն յարտասուս լուծաւ . և յօդել զբարբառ բերանոյ ըն դառն հեծութի սրտի՝ ասէ . մեծ և համօրէն տիեզերաց անլուր չարիք մօտ առդուրս հասեալ կան ։ Տուաւաք կաթուղիկէ՝ անհնարին մրրկաւ վրդովեսցի . և մարդիկք նմանեալք գրաստուց՝ կեղեքեսցեն զսրբուհիս ։ Զանզի տեսի շուրջ զսեղանով սբն զբազմութի ջորեաց , որք ստէպ աքացի հարկանելով զսբն խաթարել ցրուէին ։ Մ՛յս է պատճառն հեծեծանաց իմոց՝ զոր լուիք ։ Եւ եղև ձայն սբն՝ որ ասէր . պղծելով պղծեցի սեղան իմ ։

Եւ ոչ յետ բազմաց արդեամբք տեսիլն 'ի գլուխ ելանէր . զի յետ երկուց ամաց զօրացաւ անօրէն մոլեգնութին արիանոսաց ։ Եւ էր տեսանել յայնժամ եկեղեցեաց յափշտակութի , և ածային սպասուց սեղանակապտութի ։ Յայնժամ եղեն 'ի պղծութի պաշտամունք սրբութե դարշելի ձեռօք հեթանոսաց ։ Յայնժամ դառք քրիստոնէից 'ի ձեռն քնամարտ հնարից հեթանոսական բռնութե

առ-

ոստովք արմաւենեօք, (որ առ աղեքսանդ-
րացիս էր նշանակ կռապաշտութե,) ստեպաւ
վարեցին յեկեղեցին, զի 'ի ժողովրդեանն
անդր արիանոսաց լինիլ համարեցին։ Ո՜վ
անքննելի չարեացս. սոսկայ անձն իմ 'ի պատ-
մել զիրսն՝ որ յայնմ ժամու գործեցան։
Կուսանք և կանանիք մատնեցան 'ի խայ-
տառակութի. արիւն ոչխարացն. քնի հեղեալ
'ի քննեան տաճարի՝ թաթաւեալ զսեղանս.
և աւազանն մկրտութե պղծեցաւ ընդ կամս
հեթանոսաց։ Ոչինչ վրիպեցաւ 'ի ճշմար-
տութե տեսլեանս. ոչ և յելից իւրացն յայտնի
եղև. զի խեռութի աքացող ջորեացն նշանակ
էր ամբարշտութե արիանոսաց։
Բայց զտրտմութիւն զայս փարատեցոյց մխի-
թարկն բանիւք բարեյաջողութե յետագայ
յաղթութեն, և ասէ. Ո՛վ իսպառ տրտմիջիք
որդեակք. զի ոչ բարկացաւ տր, նոյնպէս դար-
ձեալ ողորմեսցի. և եկեղեցին փութով ըն-
կալցի զառաջին իւր վայելչութի. և զորս պա-
հեցին զհաւատս նոր 'ի հալածանս, տեսջիք
միւսանգամ նովին պայծառութե լուսաւոր-
եալս։ Դարձցին անդրէն յորջս իւրեանց
ոճքն. և հաւատքն և ևս ճշմարտակ տարածես-
ցի. 'բայց միայն զգոյշ լերուք անձանց, զի
մի անկեղծութի. հաւատոց ձերոց շաղախեալ
յաղանդով արիանոսաց աղտեղասցի։ Զի
այդ վարդապետութի առաքելոց, այլ՝ 'ի դի-
ւաց և 'ի հօրէն նց 'ի սատանայէ է։ Այս
ընդ անմտութե գրաստուց՝ 'ի նմանութի անաս-
նոց անբանից օրինակեցան անձինք նոցա։
Զայսմ վայր եղեն բանք անտոնի։

Բայ

Այլ մեզ ոչինչ արժան է թերահաւատել ընդ հնարաւորութիւն դաւաշակութեան մեծի սքանչելեացս 'ի ձեռն մարդոյ։ Ո՛ ի փրկչին խոստումն է՝ որ ասէ. * Ամէն ասեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս քան զհատն մանանխոյ, ասասջիք լերինս այսմիկ՝ փոխեաց աստի անդր, և փոխեսցի. և ոչինչ անհնարին լինիցի ձեզ ‖։ Եւ թէ, * Ամէն ամէն ասեմ ձեզ, զի զոր ինչ խնդրիցէք 'ի հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ. խնդրեցէք և առնուցուք ‖։ Քանզի և ինքնին իւրոց աշակերտաց, և համօրէն հաւատացելոց հօտին՝ խոստացեալ, երբեմն զիշխանութիւն 'ի վերա դիւաց, և երբեմն զբժշկութիւնս 'ի պէսպէս ախտից, ասէր. * Ձրի առիք, և ձրի տուք ‖։ Միթէ ինքնին խա՛ն զօրութեան բժշկէր Անտոն. կամ թէ իւրում կարողութեան գրէր, զոր առնէր։ Անզօթիւք՝ և ո՛չ հրամանաւ նորին՝ դևք մերժէին, և ախտք փարատէին. և ամենայն նշանք միշտ յանուն Քրիստոսի Աստուծոյ մերոյ կատարէին։ Մի՛ ոք յիմաստնոց զսքանչելիս բժշկութեանց՝ Անտոնի ընծայեսցէ, այլ Տեառն յոյր, որ նոյն սովորական խնամոց իւրոյ մարդասիրութեան ցուցանելով զբարերարութիւն իւր 'ի վերա ատեղծուածոց, և այժմ զնոյն եցոյց գթասիրաբար 'ի ձեռն ընտրելոյ ծառայի իւրոյ։ Անտոն աղօթէր միայն, և Տէր 'ի վերա արդեանց վաստակոց նորա շնորհէր զամենայն։



Գլուխ.

# Գլուխ. ԺԹ.

## Խրատք պաշտպանութեան տիրոնի 'ի Տէր պատուիրելոյ։

Բազում անգամ՝ և ակամայ ածէին զնա եղբարքն յարտաքին լեառն։ Դէպ եղև զի և դատաւորք՝ որք առ դժուարուն ճանապարհին, և առ բազմութեն զկնի եկելոցն, և աՀագին անապատին, ոչ կարէին գնալ մինչև 'ի ներքին վանսն առ նա, 'ի Հասանել անդր 'ի լեառն արտաքին՝ աղաչաւորս արձակեցին՝ և խնդրէին տեսանել զերեսն նր։ Եւ իբրև ոչ կարացին Հասանել խնդրոյն, զի յոյժ նեղէր ծերն ձանձրութբ 'ի բազում երթևեկաց, յայնժամ յայլ Հնարս մտանէին. զի զպնդեալս 'ի շղթայս, զորս աւպիրատուն իւրեանց, կամ ատենականն իշխանութեն արկեալ էր 'ի կալանս, առեալ յղեցին առ նա, գիտելով թէ անՀնար է անտեսանել զնոքօք. ոմն և արդեամբք յաղթեալ յարտասուաց նց՝ ելանէր դայր յարտաքին լեառն. զի գիտէր, եթէ աշխատութի իւր օգուտ լինի տառապելոցն. և խրատէր զդատաւորսն, որոց կոչեալ էր զնա, զի 'ի Հատանել զվճիռ՝ նախամեծար արասցեն զերկիւղն այ քան զատելութի և զներողութի. և 'ի միտ ածցեն զգրեալն յաւետարանի, թէ * որով դատաստանաւ դատիք, նովին դատելոց էք և դուք ||։

Բայց 'ի խօսիլ անդ իւրում ատեալ յիշէր զցանկալի անապատ իւր։ Ո որոյ յետ ակա-

մայ

մեղ դայ 'ի վր քո. դադարեա 'ի հալածե_
լոյ զքրիստոնեայս, զի մի հասցէ 'ի վերայ
բարկութն, որ սպառնայ քեզ 'ի մօտոյ զերա_
դահաման կորուստ։ Իբրև ընթերցաւ թշուա_
ռականն զթուղթն, ծաղր արար զբանիւք
նորա, և թքեալ 'ի վր՝ ընկէց 'ի գետին. և
զթղթաբերսն ևս անարգել բազում թշնա_
մանօք՝ պատուէր ետ դառնալ և ասել ան_
տոնի զայս բան. Քանզի փոյթ մեծ ունիս
զկրօնաւորաց՝ հնապա և առ քեզ խրատ խրա_
տուէ իմոյ հասցէ։ Այլ արագ արագ պա_
տուհասակոծ լինէր՝ որ յոխորտս սպառնայր.
և յետ հինգ աւուրց վրէժխնդրութն այ կար_
կէր զապերասան բերան նր։

Քանզի դէպ եղև ամ ելանել երթալ յա_
ռաջին օթեվանն՝ որ արտաքոյ աղեքսան_
դրիոյ՝ քերիոն կոչեցեալ՝ ընդ նախասացեալ
նեստորի եպսկոպոսին եգիպտոսի։ Հեծեալ
էին երկոքին յերիվարս հեզս, զորս դարմա_
նեալ և ընտելացուցեալ էր բաղակայ առաւել
քան զայլս, քզի նր էին։ Արդ՝ իբրև երկոքին
երիվարքն ըստ բուսոյ բարուցն սկսան խաղա_
պասիլ ընդ միմեանս՝ հեզադոյնն 'ի նոցանէ՝ յո_
րոյ վր նստեալ էր նեստոր, յանկարծակի խա_
ծուծածով ընկէց զբաղակ յերկիր, և մոլեգին
քերանաբացութբ դիմեալ 'ի վր՝ խածատեաց
և պատառեաց անխնայ զազդերս նր. մինչև
փութացեալ բարձին և տարան զնա 'ի քղքն.
և անդ յետ երից աւուրց եհան զոգի. և
յայտնի եղև ամենեցուն ընդ հուպ կատա_
րումն կանխագուշակ սպառնալեացն անտո_
նի 'ի վր բաղակայ՝ զարժանին հալածչի

յան_

յանձին ընկալեալ զվախճան։
Բայց զայլս յեկեղեց անտի առնա՝ բարե-
յորդոր բանիւք համեստութեան խրատէր ան-
տոն, զի մոռասցեն զփառս աշխարհի՝ փափա-
քեսցին երջանիկ կենաց միայնութեան։ Իսկ որք
հարստահարեալ լինէին յիշխանութենէ անտի և
ոչ գտանէին զիրաւունս, այնպէս սրտի մտօք
պաշտպան լինէր նց, մինչ թուէր թէ ինքն
էր՝ որ փոխանակ նց կրէր զզրկանսն։ Բազ-
մաց օգուտ եղեն բանք սքանչելի ծերոյն.
քանզի և բազումք եղեն՝ որոց թողեալ լքեալ
զերևելի մեծութիս, և զաւագութի զինուո-
րութեան, զնորին շաւղացն զհետ ընթացան։ Եւ
զի զանբաւսն 'ի մի բան համառօտ բովան-
դակեսցուք, բժիշկ իմաստութն պարգևեալ
էր քնի զնա Եգիպտոսի։ Ո՞ ոք զսրտմտութ
իւր առաջի անտոնի ոչ փոխեաց յուրախութի.
ո՞վ ոք զբարկութին անդէն ոչ շրջեաց 'ի հան-
դարտութի. ո՞վ ոք ոչ փրատեաց զսուգ որբութեն
'ի տեսանել զնա. ո՞վ ոք ոչ 'ի բաց թօթա-
փեալ զսրտմտութ տառապնաց իւրոց յերեսաց
աղքատութե, միանգամայն արհամարհեաց
զփարթամութիս մեծատանց, և ուրախ եղև
'ի վշտ աղքատութե իւրոյ։ Ո՞ր կրօնաւոր թու-
լացեալ՝ և ոչ անդրէն զօրացաւ յորդորմամբք
նր. ո՞ր երիտասարդ բորբոքեալ 'ի ցանկութի
և ոչ խրատուք նր եղև սիրող պարկեշտութե։
Ո՛ր այսահար ոք՝ առանց բժշկութե դարձաւ
'ի նմանէ։ Ո՛վ ոք թշնամեօքն խորհրդովք
վարանեալ՝ ոչ հանդարտեաց 'ի մթացուցիչ
խռովութէ անտի, և անդորրացեալ ոգւով դար-
ձաւ 'ի նմանէ։ Քանզի գիտէր, թէ զինչ

է ինչ

ինչ նեղութի յանձին կրէ այր իւրաքանչիւր, և
յարդեանց կենացն ընտրելով զոգիս՝ մատու-
ցանէր զառողջարար բանիցն զբժշկութի ըստ իւ-
րաքանչիւր վիրաց։ Նա և աստ յայսմանէ եղև,
զի յետ ծաղկելոյ վարդապետութեան նր՝ ամ
հնարք բանսարկուին 'ի յայտ եկին։ Նաև
բազումք յորխորդաց՝ որոց խօսեցեալ էր առն,
էր տեսանելն զնա՝ ոչ թէ անդստին յառա-
գաստէ 'ի դուրս մեկնեալք՝ 'ի ծոց մօր եկե-
ղեցւոյ հանդարտեալ նստան, եղեն կուսանք
քնի.

Զինչ և ես յերկարեցից. յամ աշխարհաց
Մարդիկ խուռն ընթանային առ նա. և յամ
ազգաց զանազանս լեզուք խնդրէին տեսա-
նել զայրն քաջ պատերազմօղ՝ զարի ախոյ-
եանն ըդդէմ դիւաց։ Ոչ ոք զանգատ կալաւ
երբէք իբրև յանօգուտս աշխատեալ 'ի գալ-
ստեան առ նա. ամենեցուն եղև շահավաճառ
մեծ՝ զուշարձալի և ցանկալի՝ փոխան վաս-
տակոցն։ Զի աշխատութի ճանապրհին անդ-
րէն զթոշակն յինքեան բերէր շահեկանութ.
ոչ և արդեամբք յայտնի ցուցաւ։ Զի յետ
փախչանի նր՝ առ հօրն ոչ որք մնացեալ լա-
ցին այր իւրաքանչիւր զհայրն իւրեանց.



ուռածս ընտու և հուպ լինիլ արգելոյր․ քան֊ զի գիտէք՝ ասէր, զվաղեմի հեստութին նց։ Եւ մի՛ էր արիանոս ասէ հաղորդութի արաս֊ ջիք երբէք․ զի ամբարշտութի նց յայտնի իսկ է ամենեցուն։ Եւ յաւել ասել և զայն, թէ չէ՛ պարտ ումեք ՚ի քրիստոնէից՝ զանգիտել և խոտորիլ ՚ի ճշմարտութէն քի, տեսանելով՝ թէ իշխանք Յիս բուռն պաշտպան լինին չա֊ րութէ արիանոսաց, և մելիտիանոսաց․ զի այն ձեռնտուութի է առն մահկանացուի, և ո՛չ յերկար ինչ մարթ է կալ մնալ ստապատիր ցնորից։ Այլ որոյ պա՛րտ է ձեզ ասէ՝ պահել զհաւատս բարեպաշտութե՛ն որ ՚ի քս․ և զող֊ ջամիտ աւանդութիս հարց, զոր ուսայք ըն֊ թերցմամբ ածաշունչ գրոց, և յաճախ խրա֊ տուք նուաստութես իմոյ։

՚Ի վախճանել նր զբանսն՝ բզմ թախան֊ ձանօք աղաչէին զնա եղբարքն լինել առ֊ նս, փափաքելով օրհնիլ ՚ի նմէ յերջանիկ փոխման հօր իւրեանց։ Այլ նա ընդդէմ եկաց նց վս բազում պատճառաց, զորս և բուն յայտ առնէր նց․ այլ առաւելագոյնս վս խորշելոյ ՚ի սովորութէ անտի եղելոյ յե֊ գիպտոս։ Քանզի այս օրէնք էին եգիպտաց֊ ւոց, զի զազնուականաց (կմ զբարեպաշ֊ տից), և մանաւանդ զերանելի մարտիրոսաց զմարմինս՝ թէպէտև կտաւօք պատէին, և զմն կարգ թաղման անյապաղ կատարէին, բայց չառնուին յանձն է հողով ծածկել, այլ ՚ի գահոյս ուրեք ՚ի տան անդ ամփոփել պահէին։ Օ այս պատի առնել վախճանե֊ լոյ՝ աւանդեաց ունայնութին վաղնջուց սովո֊ րութէ։

րուն ։ Մ՝ն սոցին իրաց բազում անգամ ա-
ղաչեաց անտոնն և զեպիսկոպոսունս, զի եկե-
ղեցական սաստիւ վկայուն եդեալ ուղղեսցեն
զժողովուրդս . ոչ և զաշխարհականս՝ զորս
և զկանայս ինքնին յանդիմանէր՝ և ասէր ,
թէ ոչ օրէն է բանդ այդ՝ և ոչ հաճոյ այ .
զի ահաւադիկ նահապետաց և մարգարէից
գերեզմանք, որք կան մինչև ցայսօր 'ի միջի
մերում, յանդիման հարկանեն զայդ գործ ։
Եւ ես առաւել հայեցարուք ասէ՝ և յօրի-
նակ տեառնեան մարմնոյն, որ եդաւ 'ի գե-
րեզմանի, և փակեցաւ ե՟ վիմօք՝ մինչև ցեր-
րորդ օր յարութն ։ Եւ այսու օրինակաւ զտա-
րադեսցի օրէնս եգիպտացւոց 'ի վե՟ մեռե-
լոց, թէպէտ և ոք մարմինք իցեն, կշտամ-
բեր՝ ասելով . Ո՞ինչ պատուականագոյն՝
կա՟ առաւել ոք քան զտէրունական մարմինն,
որ ը՟ սովորութն ազգաց համօրէն 'ի հող եր-
կրի թաղեցաւ ։ Այս իրաւացի յորդոր 'ի
բաց խլեաց 'ի բազմաց զսովորականն զայն
ախտ . մինչև այնուհետև թողել նց զմեռեալն
'ի հող, և գոհանալ զայ վն բարւոք վարդա-
պետութն նր ։ Արդ՝ քջի երկնչէր նա 'ի սովո-
րուէ ասափ, զի մի՛ և 'ի վե՟ իւր կատարեսցեն
զմոլար օրէնսն, փութով ողջոյն տուեալ միա-
նակեցացն ժողովելոց՝ դիմեաց գնաց անդ-
րէն յառաքինարանն իւր ցանկալի ։



ԳԼՈՒԽ.



# ԴԻՄԻԽ ԻՆ.

Փոխումն 'ի կենաց , և ընդունումն՝ աստուծոյ տարփողնէ սէրն :

Եւ յետ սակաւ ամաց՝ իբրև զաւ ինչ սաստկութ նեղէր զծերացեալ մարմինն , կոչեաց առ ինքն զեղբարսն երկոսս , որք 'ի հնգետասան ամաց հետէ բնակէին առ-դէն փոքր ինչ հեռագոյն՝ դաստիարակեալ ը ձեռամբ նր , և 'ի ծերութ անդ նր պաշտէին զնա . և ասէ ցնա . Ես ահա որդեակք՝ ըստ բանի գրոյն՝ * երթամ զճանապարհ հարց ‖ : քանզի արդ՝ կոչէ զիս Տր , արդ-ցանկամ տեսանել զերկնային փառսն : Այլ ձեզ ով որդեակք զաւակք իմ զայս խրատ աւանդեմ . մի զբազմամեայ աւուրց վաստակն ձեր 'ի մի վայրկեան կորուսանիցէք . այսպէս դիք 'ի մտի՝ եթէ այսօր բուռն հարկք զծա-յեկրօն . կարգաց . և իբրև այն ինչ սկսեալ կամացն զօրութի օր քան զօր հաստատեսցի : Մի տուք զազգի ազգի խարդախութիւ դիւաց . տեսէք և զյանդուգն յարձակմունս նց , և զտկարութ անպիտան զօրութե նց : Ու յիշ հեծեծեսջիք . և զհաւատս անուանն նր հաստատեսջիք 'ի միտս ձեր . և 'ի ճշմա-

ըստ հաւատոց դեք ՟ամ հալածէինք փախս-
տականս լինիցին: Եւ ես յուշ լիցին ձեզ
խրատք իմ, և ստէպ 'ի միտ ածէք զվաղան-
ցուկ ընթացս հանապազօրեայ անստոյգ կեն-
ցաղոյս. և յաղթանակն երկնային անյա-
պաղ շնորհեսցի ձեզ: Որձլ զգոյշ լերուք 'ի
թունից հերձուածողաց և հերետիկոսաց,
և նմանօղք ինձ եղերուք՝ թէ ո՞չ խորշէի 'ի
նցէ, զի թշնամիք են քնի: Դուք ինքնին գի-
տէք, թէ ո՞չ և ոչ բանիւ միով խաղաղութե
վարէի երբէք ընդ նս յաղագս թիւր կամաց
նց, և քսամարտ յանդգնութե նց: Արդ ա-
ռաւել այսմ փոյթ կալջիք, զի պահեսջիք
զպատուիրանս տն, և զի յետ մահուան ձե-
րոյ սէք ՟ամ իբրև զբարեկամս և զծանօթս
*ընկալցին զձեզ 'ի յարկսն յաւիտենից ‖:
Զայս խորհեցարուք, և 'ի դոյն խոկացէք,
և զայսոսիկ նորոգեցէք միշտ 'ի սիրտս ձեր:
Եւ եթէ փոյթ ինչ իցէ ձեզ վն իմ, և եթէ
համարիք զիս ձեզ հայր, և զփոխարէն ինչ
սիրոյ հատուցանել ինձ կամիցիք, մի՛ ոք ըդ-
նչխարս իմ տանիցի յեգիպտոս, զի մի՛ ունայն
չքով դիցեն 'ի պահեստ զմարմին իմ, և զօ-
րէնսն՝ զոր ես ինքնին յանդիմանէի, ո՞չ և գի-
տէք, յիմ վն կատարեսցեն. զի և առաւել
վն դոյզն իրաց եկի ես այսր: Ապա դուք
ծածկեցէք զիս հողով, դուք ամփոփեսջիք
զմարմին հօր ձերոյ: Եւ զայս ես պատուէր
ծերոյն ձերոյ զգուշասջիք պահել. զի
մի՛ ոք գիտասցէ զտեղի գերեզմանի իմոյ՝
բաց 'ի ձէնջ սիրելեացդ: Աստահ եմ 'ի
տր, զի յոր յարութե անշուշտ յարիցէ այս
մար-

մարմին անապական։ Այլ զհանդերձս իմ այսպէս բաժանեսջիք. զմաշկեակն՝ և զկրկնոցն հնոտի, յորոյ վ(ասն) անկեալ դնիմ, տուք ամենասուր եպիսկոպոսին, զոր մատոյց ինձ ինքն նոր։ Զմիւս մաշկեակն տացէ Սրապիոն եպիսկոպոսն, և դուք առջիք զմազեղէն պարեգօտն իմ. և մնասջիք խաղաղութ(եամ)բ ով սիրելի զաւակք իմ. զի անտոն փոխի յաստեացս, և այլ ոչ ևս եղիցի ը(նդ) ձեզ յաշխարհիս յայսմիկ։

Եւ իբրև կատարեաց զբանսն, և մատուցեալ համբուրեցին զնա աշակերտքն, տարածեաց փոքր մի զոտսն, և հայէր զուարթերես 'ի մահ իւր. մինչև 'ի զուարթութէ անտի դիմաց ն(որ)ա՝ յայտնի իմանալ զբազմութի հրեշտակաց ս(ր)բ(ո)ց, որք իջեալ էին առնուլ զհոգի նորին։ Հայեցեալ 'ի նս անտոնի՝ իբրև զբարեկամս տեսանելով, աւանդեաց զոգին. և յաւելաւ առ հարս՝ ը(ստ) գրոց ձայնին։ Կատարեցին աշակերտքն զհրամանն անտոնի. և ոմ(ն) պատուէր տուեալ էր նց(ա), պատեալ զմարմինն՝ ծածկեցին ը(նդ) հողով։ Եւ ոչ ոք մինչև ցայսօր՝ բաց 'ի նոցանէ՝ գիտաց զտեղին, յորում թաղեցաւ։

Իսկ ժառանգն կտակի-երանելւոյն անտոնի, (այն ինչն է ամենայն գրոց բանիցս), որ արժանի եղև ընդունել հրամանաւ նորին զկրկնոցն հնոտի՝ մաշկեկաւն հանդերձ, զանտոն յանտոնի պարգևսն համբուրէ ըղձմամբ, և իբր՝ մեծագին գանձուց ժառանգորդ. լեալ՝ խնդամիտ ուրախութ(եամ)բ յուշ առնէ 'ի ձեռն զգեստուց զպատկեր սրբուն նր(ա)։

Պաւղոս.

## Գլուխ. ԻԲ։

Մերձաւորութէ սիրոյ աստուածոյ հայրենեացն՝ հետե-ւակէ ձայնագոյս սիրոյ տնօրէնն աշխարհի։

Այս եղեւ կատարած կենացն Անտոնի, եւ նոյն սկիզբն վաստակոց նր. զոր թէպէտեւ սուղ բանիւք ճառեցի՝ ոչ կանխատեսն սացի, այլ կարօղ էք յայսմ ամէ 'ի միտ առնուլ; եթէ զիարդ այրն այն 'ի մանկութէ մինչ 'ի ծերութի եհաս. եւ թէ զիարդ զամ կարծիս նմանեաց ցանգ արհամարհելով՝ ոչ 'ի մարմնոյն տկարութե, եւ ոչ 'ի բազմամեայ հասակ իւր երբէք խոնարհեաց։ Այլ յամե միօրինակ ունելով զառաջին եղեն կեանն՝ ոչ զհանդերձսն փոխեաց, ոչ զոտսն լուաց, եւ ոչ 'ի խնդիր եղեւ փափուկ կերակրոյ։ Սրութի աչացն՝ եւ թիւք ատամանց ոչինչ նուազեցան. թէպէտ վս ծերութե փոքր մի ատամունքն երեւէին փչրեն։ Դարձեալ եւ գնացք ոտիցն, եւ ողջոյն մարմնոյն զօրութի այնպէս պահեցան արտաքոյ օրինաց բնութե 'ի շնորհս աղօթեանց նր, զի եւ քան զմարմինս փափուկս լուացելոց 'ի բաղանիս եւ 'ի գիրգանս յօրացելոց մարմինս նր կայտառ եւ շքեղ երեւէր։

Իսկ զայն են նշանք, զի ընդ ամ երկիր անուն նր եւ համբաւն տարածեցաւ, (զոր ոչ յօգնապատում բանք ափիւ ամփոփեցին, եւ ոչ պերճութիւք ճակատ իմաստից, եւ ոչ առաջնորդեալ ազնուականութի, եւ ոչ բազմամեայ ընչից յաճախութի հրատարակեցին), ոմ այլ ու-

մեք

մեք արժան է վերագրել 'ի մի բերան, եթէ ոչ քնի, որոյ է այս պարգեւ. այն՝ որ ջերմեռանդն սրտի իւր առ իւրն մեծվայելչութիւն յառաջադէմս լինելով, զայրն ծածկել իւրեւ յօտար աշխարհէ, եւ զ'ի խորին ամայութե մենացեալն՝ (ըստ յառաջագոյն խոստման իւրոյ) հանդիսացոյց առ հասարակ յափրիկէ, 'ի սպանիա, 'ի գաղղիա, յիտալիա, 'ի լիւրիկէ, եւս եւ 'ի մայրն քաղաքաց 'ի հռովմ։ Արարչին է գլխովին այս մարդասիրութի, որ զծառայս իւր ՚՚Թէպէտ եւ չկամիցին՝ սովոր է մեծացուցանել, առ 'ի յայտ առնել օրինակօք սրբոց, եթէ հնարաւոր է առաքինութի, եւ չէ ինչ 'ի վեր քան զմարդկեղէն բնութիս. եւ առ 'ի յորդոր բարեսէր անձին իւրաքանչիւր՝ գնալ զհետ երանաւէտ կենացն՝ նայելով 'ի գեղեցիկ պտուղ արդեանց վաստակոց նոցա ։

Ապա փոյթ տարջիք սակայն ընթեռնուլ զգիրս զայս առաջի եղբարց. որպէս զի տեղեկացեալ հաւատարիմ վարուց երկնաքաղաքացի քրիստոնէից՝ եւ միայնակեցաց, խելամուտ լիցին՝ թէ փրկիչն մեր Յ՟ս Ք՟ս զփառաւորիչս իւր փառաւորէ, եւ զորս ծառայեն նմա, ոչ միայն ժառանգութ՟ք երկնից արքայութե պսակէ, այլ եւ յաստիս՝ զորս ցանկան զօղիլ յանծանօթս 'ի փապարս լերանց, մեծաշուք պատուով անուանի առնէ. որպէս զի ոչ միայն ինքեանք յարդիւնս իւրեանց վայելեսցեն, այլ եւ այլք օրինակօք նոցին յորդորեսցին ։

Իսկ թէ հարկ ինչ լինիցի՝ եւ հեթանոսայ

առա-

առաջի ընթերցջի՛ք զգիրսդ․ զի դովին իսկ ծանիցեն, թէ տ՟ն մեր յս՟ ք՟ս ոչ միայն է ա՟ծ, և որդի ա՟յ․ այլ և որոց մտադիւրն ծառայեն նմա, և ողջմտութ՟բ հաւատան 'ի նա՝ տայ զիշխանութի՟ կոխելոյ և հալածելոյ զդեւս՝ զկարծեալ ա՟ծս նց՟՝ զդաւաճանօղս ազգի մարդկան, և զտիչս ա՟մ ապականա-
բար հնարից չարութ՟ե ։

# ՎԱԽՃԱՆ։



